## Մեր հեղինակներին

«Լենինյան ուղիով» ամսագրի խմբագրությունը խնդրում է հոդվածներ ուղարկելիս ճշտորեն պահպանել հետևյալ կանոնները. տեսական բնույթի հոդվածները՝ 18 մեքենագրական էջից ոչ ավելի, պրակտիկ աշխատանքը և առաջավոր փորձը լուսաբանող հոդվածները՝ 8—10, նամակներն ու թղթակցությունները՝ 4—6, գրախոսականները և մամուլի տեսությունները՝ 6—8 էջ։

Անդրկովկասի ու Հայաստանի հեղափոխական շարժման թեմաներով գրված և Հայաստանում մարքսիզմ-լենինիզմի տարածմանը նվիրված հոդվածները պետք է ունենան ռուսերեն ամփոփում՝ 8 տողի չափով։

Հոդվածները պետք է մեքենագրված լինեն երկու ինտերվալով, երկու օրինակից, հեղինակի կողմից ստորագրված՝ նշելով հեղինակի լրիվ անունը, հայրանունը և ազգանունը, հասցեն, աշխատանքի վայրն ու հեռախոսի համարը։ Խմբագրությանը հանձնված հոդվածներից մեկը պետք է լինի մեքենագրվածի առաջին օրինակը։ Հոդվածում անհրաժեշտ է ցույց տալ մեջբերումների և թվական տվյալների աղբյուրները։

Մարքսիզմ-լենինիզմի կլասիկների, կուսակցության և սովետական պետության ղեկավարների, միջազգային բանվորական ու կոմունիստական շարժման ականավոր գործիչների աշխատություններից, պաշտոնական փաստաթղթերի ժողովածուներից վերցված քաղվածքները, վկայակոչումները պետք է լինեն երկերի հատորների կամ աշխատությունների հայերեն, իսկ եթե այդպիսիք չկան՝ ռուսերեն վերջին հրատարակությունից։

Տեսական և գիտական բնույթի հոդվածների վերջում պարտադիր է նշել օգտագործված աղբյուրների համառոտ ցանկը։

Սույն պահանջները խախտողների հոդվածները չեն տպագրվի։ Ներկայացված հոդվածն անհետևանք կմնա, եթե այն ամբողջովին կամ հատվածներով հրապարակված լինի մամուլի և ինֆորմացիայի որևէ օրգանում։

Խմբագրությանն ուղարկված հոդվածները չեն վերադարձվում։

# ԼԵՆԻՆՅԱՆ ՈՒՂԻՈՎ

11
ՆՈՅԵՄԲԵՐ, 1981
ՀՐԱՏԱՐԱԿՎՈՒՄ Է 1922 Թ.
ИЗДАЕТСЯ С 1922 Г.
Выходит один раз в месяц
на армянском языке

ՀԱՅԱՍՏԱՆԻ ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ԿՈՒՍԱԿՑՈՒԹՅԱՆ ԿԵՆՏԿՈՄԻ ՏԵՍԱԿԱՆ-ՔԱՂԱՔԱԿԱՆ ԱՄՍԱԳԻՐ
«ЛЕНИНЯН УГИОВ» («По ленинскому пути») — теоретический и политический журнал ЦК КП Армении

## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ



ԵՐԵՎԱՆ ★ ՀԿԿ ԿԵՆՏԿՈՄԻ ՀՐԱՏԱՐԱԿՉՈՒԹՅՈՒՆ

## СОДЕРЖАНИЕ







# Լ. Ի. ԲՐԵԺՆԵՎԻ ՊԱՏԱՍԽԱՆԸ «ՊՐԱՎԴԱՅԻ» ԹՂԹԱԿՑԻ ՀԱՐՑԻՆ

ՀԱՐՑ: Վերջերս ԱՄՆ-ի պրեզիդենտ Ռ. Ռեյգանը հայտարարեց, թե Սովետական Միությունը, դատելով, իբր, նրա ղեկավարների՝ «իրար միջև» ունեցած խոսակցություններից, հնարավոր է համարում հաղթանակը միջուկային պատերազմում: Դրանով նա փորձում էր հիմնավորել ԱՄՆ-ի միջուկային զինանոցի արագ մեծացման իր կուրսը:

Ի՞նչ կարող եք ասել Դուք, Լեոնիդ Իլյիչ, ամերիկյան պրեզիդենտի հիշյալ հայտարարության առթիվ:

ՊԱՏԱՍԽԱՆ: Պ-րն Ռեյգանի խղճին թողնելով այն վկայակոչումը, թե, իբր, իրեն հայտնի է, թե իրար միջև ինչ են խոսում սովետական ղեկավարները, ըստ հարցի էության կասեմ հետևյալը: Սովետական ղեկավարության, ինչպես և ամբողջ սովետական ժողովրդի, խոհերն ու ջանքերն ուղղված են մի նպատակի՝ առհասարակ թույլ չտալ միջուկային պատերազմ, վերացնել դրա առաջացման բուն սպառնալիքը:

Մեր միջավայրում մենք ասում ենք այն նույնը, ինչ ես ի լուր ամենքի ասացի ՍՄԿԿ XXVI համագումարի ամբիոնից, այն է՝ փորձել միմյանց հաղթել սպառազինությունների մրցավազքի ասպարեզում, հույս դնել միջուկային պատերազմում հաղթելու վրա՝ վտանգավոր խելահեղություն է:

Կավելացնեմ, որ միջուկային պատերազմից հաղթող դուրս գալու հույսով այդպիսի պատերազմ սկսել կարող է միայն նա, ով վճռել է ինքնասպանություն գործել: Ինչպիսի հզորություն էլ ունենա հարձակվողը, միջուկային պատերազմի սանձազերծման ինչպիսի եղանակ էլ ընտրի, նա իր նպատակներին չի հասնի: Հատուցումը կհետևի անկասելիորեն:

Այսպիսին է մեր սկզբունքային տեսակետը: Լավ կլինի, եթե ԱՄՆ-ի պրեզիդենտն էլ անի պարզ և աներկմիտ հայտարարություն, որը մերժի միջուկային հարձակման բուն գաղափարը՝ որպես հանցավոր գաղափար:

Հարց է ծագում՝ ինչո՞ւ Միացյալ Նահանգները չպաշտպանեն ՄԱԿ-ի գլխավոր ասամբլեայի ընթացիկ նստաշրջանում Սովետական Միության մտցրած առաջարկությունը առաջինը միջուկային զենք չկիրառելու վերաբերյալ:

Չէ՞ որ եթե չլինի առաջին միջուկային հարվածը, ապա, հետևաբար, չեն լինի ոչ երկրորդ, ոչ էլ երրորդ միջուկային հարվածները: Եվ, այսպիսով, ինքնըստինքյան անառարկայական կդառնան միջուկային պատերազմում հաղթելու հնարավորության կամ անհնարինության մասին դատողությունները. օրակարգից կհանվի միջուկային պատերազմի հարցը որպես այդպիսին:

Իսկ դա հենց այն է, ինչին ձգտում են աշխարհի բոլոր խաղաղասեր մարդիկ, ինչին հասնելու համար հետևողականորեն ջանքեր են գործադրում Սովետական Միությունը և նրա ղեկավարությունը: Այնպես որ, խոսքը պատկանում է Միացյալ Նահանգներին, նրանց ղեկավարությանը:

# ՄԵՐ ՄԵԾ ԵՎ ՀԱՎԵՐԺՈՂ ՀՈԿՏԵՄԲԵՐԸ

ՀՈԿՏԵՄԲԵՐՅԱՆ ՍՈՑԻԱԼԻՍՏԱԿԱՆ մեծ հեղափոխությամբ սկզբնավորվեց աշխարհի արմատական նորացման, կոմունիստական հասարակարգի կառուցման դարաշրջանը: Հոկտեմբերի ուղիով այսօր ընթանում են միլիոնավոր աշխատավոր զանգվածներ, որով վիճակված է ընթանալ համայն մարդկությանը:

Մենք առաջինն էինք: Եվ մեզ համար հեշտ չէր, ասել է ընկեր Լ. Ի. Բրեժնևը: Հարկավոր էր դիմանալ թշնամական շրջապատման օղակում: Հարկավոր էր ձերբազատվել դարավոր հետամնացությունից: Հարկավոր էր հաղթահարել պատմական իներցիայի հսկայական ուժը և սովորել ապրել նոր օրենքներով՝ կոլեկտիվիզմի օրենքներով:

Ամեն անգամ նշելով հեղափոխության տարեդարձը, մենք վերստին իմաստավորում ենք Հոկտեմբերի մեծագույն նշանակությունը, նրա ներգործության վիթխարի ուժը պատմության ընթացքի, աշխարհի ճակատագրի վրա: Ճշմարիտ է ասված, որ քսաներորդ դարն իր հետ բերեց ավելի մեծ վերափոխումներ, քան նրան նախորդած շատ հարյուրամյակները: Եվ ոչ մի երկիր այդ վերափոխումների մեջ չի ներդրել ավելի ծանրակշիռ ավանդ, քան մեծ Հոկտեմբերի հայրենիքը՝ ՍՍՀՄ-ը, հաղթական սոցիալիզմի առաջին երկիրը:

Սոցիալիզմի օրրանի սոցիալ-տնտեսական հոյակապ թռիչքը ազատագրված աշխատանքի արդյունքն է, աշխատանքի մարդկանց անձնուրաց սխրանքների արգասիքը, որոնք ստեղծեցին ու ստեղծում են նյութական և հոգևոր հարստություն իրենց ու սոցիալիստական բոլոր երկրների բարօրության համար: Մեծ Հոկտեմբերը միաժամանակ ազատագրեց բազում կեղեքվող ազգերի, սկսվեց ազգերի ու ժողովուրդների սոցիալիստական վերածնունդը: Գոյավորվել է մարդկանց պատմական նոր **հանրություն**՝ սովետական ժողովուրդ: Ազգերի մերձեցման հարաճուն պրոցեսը թափանցել է մեր հասարակության կյանքի բոլոր ոլորտները: Կյանքը հաստատում է, որ մեր հանրապետություններից յուրաքանչյուրի տնտեսական ու սոցիալական ինտենսիվ զարգացումը արագացնում է դրանց բազմակողմանի մերձեցման պրոցեսը: Տեղի են ունենում ազգային կուլտուրաների ծաղկում ու փոխհարստացում, միասնական սովետական ժողովրդի կուլտուրայի կերպավորում:

Սովետական Հայաստանը մեծ Հոկտեմբերի ծնունդն է, լենինյան գաղափարների կենդանի մարմնացումը: 1920 թվականի նոյեմբերյան լուսաշող այգը հայ ժողովրդին ձերբազերծեց ճնշման դարավոր մղձավանջից, նոր ուղի հարթեց նրա սոցիալիստական գալիքի համար: Կոմունիստական կուսակցության ղեկավարությամբ հանրապետության աշխատավորները, ՍՍՀՄ բոլոր ազգերի հետ միասին, պատմական կարճ ժամանակամիջոցում աննախընթաց վերելք ապրեցին և այսօր իրենց ստեղծարար ջանքերի ու եռանդի շնորհիվ ընթանում են կոմունիզմի կառուցման առաջամարտիկների շարքերում:

Ելնելով անփոփոխ ծրագրային պահանջից՝ ամեն ինչ հանուն մարդու, ամեն ինչ մարդու բարօրության համար, ՍՄԿԿ XXVI համագումարը վերստին հաստատեց տնտեսական աճի առավելապես ինտենսիվ գործոնները վճռականորեն կիրառելու, ամբողջ աշխատանքի արդյունավետությունն ու որակը բարձրացնելու ստրատեգիական կուրսը:

Թևակոխելով ութսունական թվականները՝ կուսակցությունն առաջադրել է



երկրի տնտեսական ու սոցիալական հետագա զարգացման գիտականորեն հիմնավորված ծրագիր: Այն տեսական ու քաղաքական համակողմանի հիմնավորում է ստացել ՍՄԿԿ XXVI համագումարի կողմից և իր կոնկրետ մարմնավորումն է գտել ՍՍՀՄ տնտեսական ու սոցիալական զարգացման 1981—1985 թվականների և մինչև 1990 թվականն ընկած ժամանակաշրջանի հիմնական ուղղություններում:

Ժողովրդի բարեկեցության բարձրացման մեծ ու բազմակողմանի այդ ծրագրի կենսագործումը տեղի է ունենում նյութական արտադրության զարգացման, նրա արդյունավետության աճի հիման վրա: Արտադրության արդյունավետության համակողմանի բարձրացումն արդի տնտեսական զարգացման սկզբունքային խնդիրն է, կոմունիստական շինարարության արդի փուլի տնտեսական-քաղաքական կարևորագույն խնդիրը:

Ժողովրդական տնտեսությունը ինտենսիվ զարգացման ռելսերի վրա փոխադրելու պրոցեսն իր մասշտաբներով, նշանակությամբ ու արդյունքներով իրավամբ հավասարվում է այնպիսի խորագույն վերափոխման, որպիսին երկիրը հիմնովին կերպարանափոխած սոցիալիստական ինդուստրացումն էր:

ՍՍՀՄ-ի էկոնոմիկան զարգանում է որպես միասնական ժողովրդատնտեսական կոմպլեքս: Զգալիորեն աճել է յուրաքանչյուր միութենական հանրապետության տնտեսական պոտենցիալը: Եղբայրական հանրապետությունների ընտանիքում տնտեսական և կուլտուրական շինարարության բոլոր բնագավառներում մեծ հաջողությունների են հասել նաև Սովետական Հայաստանի աշխատավորները:

Գոհունակությամբ ենք նշում հանրապետության աշխատավորների հաջողությունները, որոնք պատվով, ժամկետից շուտ կատարեցին տասներորդ հնգամյակի առաջադրանքներն արդյունաբերական և գյուղատնտեսական արտադրության մարզերում, որի առթիվ ընկեր Լ. Ի. Բրեժնևը սրտանց ողջունեց Սովետական Հայաստանի աշխատավորությանը:

Կարմրադրոշ հնգամյակում ապահովվեց հանրապետության էկոնոմիկայի դինամիկ, համամասնական զարգացումը, արտադրված ազգային եկամտի աճը կազմեց 43 տոկոս: Արդյունաբերական արտադրության ծավալը մեծացավ 46,2 տոկոսով: Հատկապես ակնբախ վերելք ունեցան ռադիոէլեկտրոնիկան, սարքաշինությունը, էլեկտրատեխնիկական արդյունաբերությունը, ճշգրիտ հաստոցաշինությունը:

Հայաստանի կոմկուսի Կենտկոմի մշակած տերիտորիալ համամասնությունների կատարելագործման և արտադրաուժերի տեղաբաշխման բարելավման ուղղությամբ կուրսը հնարավորություն ընձեռեց առավել ռացիոնալ օգտագործելու աշխատանքային ու բնական ռեսուրսները, որոշակիորեն կրճատելու գյուղական առանձին շրջաններից ու բնակավայրերից դեպի հանրապետության խոշոր քաղաքները կատարվող միգրացիայի պրոցեսը, նկատելիորեն բարձրացնելու այդ շրջանների սոցիալ-տնտեսական զարգացման մակարդակը: Գործարկվեցին արդյունաբերական նոր կոմպլեքսներ ու հանգույցներ Չարենցավանում, Աբովյանում, Հրազդանում, Ջրվեժում: Նոր, ժամանակակից ձեռնարկություններ ստեղծվեցին Արարատյան դաշտավայրում, Սյունիքում, Սևանի և տնտեսական մյուս շրջաններում:

Զգալի ամրապնդվել է հանրապետության էներգետիկ բազան: Անցած հնգամյակում էլեկտրակայանների սահմանված կարողությունը մեծացավ 1,4 անգամ: Էներգետիկայի զարգացման գլխավոր արդյունքը ստեղծված էլեկտրական և ջերմակարողություններն են, որոնք հնարավորություն են ընձեռում հզորացնելու ժողովրդական տնտեսության ճյուղերի էներգազինվածությունը:

Կուսակցության XXVI համագումարի առաջադրած տասնմեկերորդ հնգամյակի և մինչև 1990 թվականն ընկած ժամանակաշրջանի ծրագրային կարևորագույն ու առաջնահերթ խնդիրներից է պարենային ծրագիրը: Վերջինիս ապահովման հիմքը գյուղատնտեսության հետագա վերելքն է, որի զարգացման գլխավոր ուղղությունները նախատեսված են ՍՄԿԿ Կենտկոմի 1978 թվականի հուլիսյան պլենումի և կուսակցության XXVI համագումարի որոշումներում:

կենտկոմի ցուցումների կենսագործումը նոր փուլ կնշանավորի կուսակցության քաղաքական լուսավորության սիստեմի զարգացման գործում:

«Ավրորայի» համազարկերից մինչև լենինյան կուսակցության պատմական XXVI համագումարը, Հոկտեմբերյան հեղափոխության թռիչքի բարձունքից այսօր հատկապես խոր կերպով է գիտակցվում սովետական զինված ուժերի անգնահատելի դերը սոցիալիզմի մեծ նվաճումների պաշտպանության գործում: Հեղափոխական մարտերի բովում ծնունդ առած մեր բանակն իր գոյության սկզբից դարձավ առաջին սոցիալիստական պետության աշխատավորների նվաճումների հավատարիմ պաշտպանը: Մեծապես ուշագրավ է, որ Անդրկովկասյան Կարմրադրոշ զինվորական օկրուգի 60-ամյակը նշվեց Անդրկովկասի եղբայրական հանրապետությունների հոբելյաններից անմիջապես հետո: Դրանք մեր ընդհանուր տոներն են, բանակի ու ժողովրդի անխախտ միասնության, անդրկովկասյան ռազմիկների և Անդրկովկասի հանրապետությունների աշխատավորների եղբայրության ու բարեկամության ևս մի փայլուն արտահայտություն:

Երկրի անվտանգության ամրապնդումը և աշխարհի խաղաղության պաշտպանությունը անբաժանելի գործ են դարձել սովետական պետության և նրա զինված ուժերի համար: Դա առանձնահատուկ նշանակություն ունի հիմա, երբ իմպերիալիզմի ու ռեակցիայի ուժերը լուրջ սպառնալիք են ստեղծում խաղաղության գործի համար: ԱՄՆ-ի կառավարող շրջանները ծավալել են չտեսնված մասշտաբների սպառազինությունների մրցավազք: Նրանք գիտակցաբար բորբոքում են միջազգային լարվածության օջախները, խրախուսում են բացահայտ ագրեսիայի և միջազգային բանդիտիզմի ակտերը:

Իմպերիալիստական լկտի, ագրեսիվ կուրսին Սովետական Միությունը, նրա կոմունիստական կուսակցությունը հակադրել են 80-ական թվականների համար ՍՄԿԿ XXVI համագումարի մշակած խաղաղության ծրագիրը՝ միջազգային լարվածության թուլացումն ամրապնդելու, ամբողջ մարդկության համար անխուսափելի աղետով հղի հրթիռամիջուկային պատերազմը կանխելու կոնկրետ գործնական առաջարկությունները: Այս պայմաններում առանձնապես աճում է ՍՍՀՄ զինված ուժերի պատմական պատասխանատվությունը աշխարհի խաղաղության բախտի համար: Սովետական մարդիկ վստահ են, որ սովետական բանակը, ինչպես միշտ, հավատարիմ կլինի իր պարտքին, ինչպես միշտ նա գտնվում է անփոփոխ բարձր մարտավիճակում: Մեր ռազմիկների մարտավիճակի վառ և տպավորիչ ցուցադրում եղան զորքերի և նավատորմի ուժերի՝ վերջերս մեծ հաջողությամբ անցկացված «Արևմուտք—81» զորավարժությունները, որոնք ղեկավարում էր ՍՄԿԿ Կենտկոմի քաղբյուրոյի անդամ, ՍՍՀՄ պաշտպանության մինիստր, Սովետական Միության մարշալ Դ. Ֆ. Ուստինովը:

Անդրկովկասյան ռազմիկներն իրենց 60-ամյակը դիմավորեցին մարտական ու քաղաքական պատրաստության, ՍՄԿԿ XXVI համագումարի պատմական որոշումների իրականացման գործում ձեռք բերված նշանակալի հաջողություններով: Օկրուգի ռազմիկները, ինչպես միշտ, աչալրջորեն և հուսալիորեն կպաշտպանեն սովետական մարդկանց խաղաղությունն ու անդորրը, կպահպանեն ու կբազմապատկեն Անդրկովկասյան Կարմրադրոշ զինվորական օկրուգի հեղափոխական և մարտական ավանդույթները:

Մեծ Հոկտեմբերի 64 տարելիցը և Նոյեմբերյան այգի 61-ամյակը մեր ժողովրդի մեծագույն ազգային տոներն են, նրա նորանոր հաջողությունների առհավատչյան:

---



# ՍՈՎԵՏԱԿԱՆ ՀԱՍԱՐԱԿՈՒԹՅԱՆ ՍՈՑԻԱԼ-ՔԱՂԱՔԱԿԱՆ ԶԱՐԳԱՑՄԱՆ ԱՐԴԻ ՓՈՒԼԸ

**Է. Վ. ԹԱԴԵՎՈՍՅԱՆ**
Փիլիսոփայական գիտությունների
դոկտոր, պրոֆեսոր

*ԿՈՒՍԱԿՑՈՒԹՅԱՆ XXVI ՀԱՄԱԳՈՒՄԱՐԸ նշանակալի*
*ավանդ ներդրեց ՍՄԿԿ և սոցիալիստական համագոր-*
*ծակցության երկրների եղբայրական կոմկուսների մշակած հասուն սոցիալիզ-*
*մի կոնցեպցիայի հետագա ստեղծագործական զարգացման ու հարստացման*
*գործում: Համագումարը նշեց, որ դեպի կոմունիզմ մեր երկրի առաջընթացը*
*կատարվում է զարգացած սոցիալիստական հասարակության փուլի միջոցով,*
*որը կոմունիստական ֆորմացիայի կազմավորման պրոցեսում անհրաժեշտ,*
*օրինաչափ և պատմականորեն տևական ժամանակաշրջան է:*
*Զարգացած սոցիալիստական հասարակությունը իրականում ամբողջական*
*սոցիալական օրգանիզմ է, որի շրջանակներում ավարտվում է հասարական*
*հարաբերությունների ողջ սիստեմի վերակառուցումը՝ նոր հասարակարգին ներ-*
*հատուկ կոլեկտիվիստական հիմունքներով: «Հասուն սոցիալիզմի պայմաննե-*
*րում,— ՍՄԿԿ XXVI համագումարում ասաց Լ. Ի. Բրեժնևը,— ավելի ու ավելի*
*է սերտանում էկոնոմիկայի առաջընթացի փոխադարձ կապը հասարակության*
*սոցիալ-քաղաքական և հոգևոր պրոգրեսի հետ»* (ՍՄԿԿ XXVI համագումարի
*նյութերը, «Հայաստան» հրատ., 1981 թ., էջ 83):*
*Կոմունիստական շինարարության այս օրինաչափության իմացությունը*
*կուսակցությանը հնարավորություն ընձեռեց բացառիկ կարևոր տեսական և*
*գործնական-քաղաքական հետևություն անելու այն մասին, որ այսօր անհնար*
*է հաջողությամբ կոմունիզմ կառուցել, եթե հասարակական կյանքի առանձին*
*մարզեր խիստ առաջ անցնեն, իսկ մյուսները լրջորեն ետ մնան: Իհարկե, էկո-*
*նոմիկան եղել և մնում է հանուն կոմունիզմի պայքարի գլխավոր ոլորտը, իսկ*
*կոմունիզմի նյութատեխնիկական բազայի ստեղծումը՝ կոմունիստական շինա-*
*րարության հիմնական օղակը:*
*ՍՄԿԿ XXVI համագումարը ամբողջ ուժով վերստին շեշտեց, որ ժողտնտե-*
*սության ղեկավարումը կուսակցության ու պետության ողջ գործունեության*
*առանցքն է, որովհետև բուն էկոնոմիկայի մարզում է ամրակայվում սոցիա-*
*լական խնդիրների լուծման, երկրի պաշտպանունակության ամրապնդման,*
*ակտիվ արտաքին քաղաքականության հիմքը, ստեղծվում են կոմունիզմ տա-*
*նող սովետական հասարակության առաջընթացի անհրաժեշտ նախադրյալները:*
*Դրա հետ մեկտեղ համագումարը համոզիչ կերպով ցուցադրեց էկոնոմիկայի և*

միայն առավել արտադրողական, այլև բովանդակալից, հետաքրքրական, ստեղծագործական։ Աշխատանքը, դրա քանակն ու որակը սոցիալիզմի օրոք բաշխման գլխավոր չափանիշն են։ Ով կամենում է ավելի լավ ապրել, պետք է ավելի շատ ու ավելի լավ աշխատի։

ՍՄԿԿ XXVI համագումարը շեշտեց նոր մարդու կերպավորման անխզելի կապը մեր հասարակության առջև ծառացած սոցիալ-տնտեսական խնդիրների իրականացման հետ, որովհետև դաստիարակության հաջողությունն ապահովվում է լոկ այն դեպքում, երբ այն խարսխված է սոցիալ-տնտեսական քաղաքականության ամուր հիմքի վրա։ Անհատի շահերի, պահանջմունքների ակտիվ նպատակամետ ձևավորումը ՍՄԿԿ-ն համարում է իր սոցիալական քաղաքականության կարևոր խնդիրներից մեկը։ Սովետական մարդը, ասաց Լ. Ի. Բրեժնևը, բարեխիղճ աշխատավոր է, բարձր քաղաքական կուլտուրայի տեր մարդ, հայրենասեր և ինտերնացիոնալիստ։ Նա դաստիարակված է կուսակցության, երկրի հերոսական պատմության, մեր ողջ հասարակարգի կողմից։ Նա ապրում է նոր աշխարհստեղծողի լիարյուն կյանքով։

Համագումարում հետագա ստեղծագործական զարգացում ստացան սովետական քաղաքական սիստեմի պրոբլեմները։ Հատկապես նշվեց, որ հաշվետու ժամանակաշրջանում ընդունված ՍՍՀՄ, միութենական ու ինքնավար հանրապետությունների սահմանադրություններում արտահայտված են սովետական հասարակության տնտեսական, սոցիալական ու հոգևոր կյանքի առավել էական փոփոխությունները, համաժողովրդական պետության խոր դեմոկրատիզմը։ Դա նոր փուլ բացեց ժողովրդական դեպուտատների սովետների աշխատանքում։ Շահագրգռվածություն ընդհանուր գործով, արտադրության զարգացումով, կարծիքների համադրում, անկեղծ ու սկզբունքային քննադատություն և ինքնաքննադատություն, յուրաքանչյուր քաղաքացու հասարակական-քաղաքական ակտիվության բարձրացում՝ ահա սովետական դեմոկրատիայի, աշխատող, գործող դեմոկրատիայի էությունը,— ասաց Լ. Ի. Բրեժնևը։

Մեր հասարակության սոցիալ-քաղաքական ու կուլտուրական զարգացման հետ մեկտեղ աճում, ամրապնդվում, առնականանում է ՍՄԿԿ-ն, որն այժմ իր շարքերում ունի 17,5 մլն կոմունիստ։ Հինգ տարվա ընթացքում կոմունիստների թիվն աճել է 1,8 միլիոնով։ Կարևոր է նաև այն, որ կուսակցության կազմում անշեղորեն աճում է բանվորների բաժինը, որն այժմ հասել է 43,4 տոկոսի։ Կուսակցության ողջ համալրման 59 տոկոսը բանվոր դասակարգի լավագույն ներկայացուցիչներն են։ Կուսակցությունը բարձրացրել է պահանջկոտությունն իր անդամների նկատմամբ։ Այդ մասին համոզիչ կերպով վկայում են ՍՄԿԿ Կենտկոմի հաշվետվությունում բերված թվերը. հինգ տարում 91 հազար թեկնածուներ ՍՄԿԿ անդամ չեն ընդունվել և կուսակցության գրեթե 300 հազար անդամներ կուսակցությունից վտարվել են կոմունիստի կոչման հետ անհամատեղելի արարքների պատճառով։

Համագումարը կրկին շեշտեց, որ ՍՄԿԿ ղեկավար դերի աճը զարգացած սոցիալիզմի կարևորագույն օրինաչափություններից է։ Դրա գործնական իրականացումը հաջող կոմունիստական շինարարության կարևորագույն երաշխիքն է։ Սակայն հասարակության առաջատար ուժի դերը ինքնըստինքյան չի տրրվում։ Այն վաստակվում, նվաճվում է աշխատավորների շահերի համար մղված մշտական, անդուլ պայքարում։ Այդ դերն ամրապնդվում է նրանով, որ կուսակցությունը մշտապես ամրակայում է ժողովրդական մասսաների հետ ունեցած իր կապերը, ապրում նրանց կարիքներով ու հոգսերով։ Ժողովրդի հետ ունեցած միասնության մեջ է կուսակցության ուժը։ Կուսակցության հետ ունեցած միասնության մեջ է ժողովրդի ուժը։

---

# ՀԱՄԱԼՍԱՐԱՆԸ ԲԱՐՁՐԱԳՈՒՅՆ ԴՊՐՈՑԻ ՀԱՄԱԿԱՐԳՈՒՄ

**Ս. Ա. ՀԱՄԲԱՐՁՈՒՄՅԱՆ**
Երևանի պետական համալսարանի ռեկտոր,
Հայկական ՍՍՀ ԳԱ ակադեմիկոս

ՍՄԿԿ XXVI ՀԱՄԱԳՈՒՄԱՐԻՆ ներկայացրած Կենտկոմի հաշվետու զեկուցման մեջ մեր կուսակցության Կենտկոմի գլխավոր քարտուղար ընկեր Լ. Ի. Բրեժնևը, նշելով բարձրագույն և միջնակարգ մասնագիտական կրթության սովետական սիստեմի ձեռք բերած հաջողությունները, միաժամանակ ուշադրություն նվիրեց դրա արմատական բարելավման անհրաժեշտությանը, ընդ որում նկատի առնելով «Նախ և առաջ դասավանդման որակը, արտադրության հետ կապի ամրապնդումը։ Պետք է ավելի լրիվ օգտագործել բուհերի գիտական պոտենցիալը, որոնցում կենտրոնացված է գիտությունների մեր բոլոր դոկտորների և թեկնածուների գրեթե կեսը։ Ժողովրդական տնտեսության զարգացման համեմատ փոխվում է նաև այս կամ այն մասնագիտության կադրերի պահանջարկը։ Հետևաբար և բուհերում կադրերի պատրաստման պլանավորման սիստեմը պետք է զգայուն կերպով արձագանքի այդ փոփոխություններին»։

Համագումարի ընդունած «ՍՍՀՄ տնտեսական ու սոցիալական զարգացման 1981—1985 թվականների և մինչև 1990 թվականն ընկած ժամանակաշրջանի հիմնական ուղղություններում» սահմանված է արդի պայմաններում բարձրագույն դպրոցի գործունեության կոմպլեքսային ծրագիրը։ Բարձրագույն դպրոցը կոչված է ապահովելու գիտության արդյունավետ կապը ժողտնտեսության բոլոր ճյուղերի ինտենսիվ զարգացման պահանջմունքների հետ, նրա համար պատրաստելու լայն պրոֆիլի մասնագետներ, որոնք տեսական գիտելիքները համատեղեն գործնական խնդիրները բարձր որակով լուծելու ունակության հետ։

Բազմամյա պրակտիկան ցույց է տվել, որ այս խնդիրների հաջող լուծման գործում հատուկ դեր ունեն համալսարանները՝ որպես բարձրագույն դպրոցի առաջատար գիտամեթոդական և գիտական կենտրոններ։ Եվ դա հասկանալի է, որովհետև համալսարանները զբաղվում են կադրեր պատրաստելով ո՛չ միայն ժողտնտեսության տարբեր ճյուղերի, այլև կրթության ողջ սիստեմի (այդ թվում նաև բարձրագույն դպրոցի), գիտության համար, հետազոտական զգալի աշխատանք են կատարում։ Հենց համալսարաններն են օժտված ուսումնական և գիտահետազոտական գործունեությունը զուգակցելու նպատակով նոր ձևեր ու մեթոդներ մշակելու և հանձնարարելու այս կամ այն ռեգիոնի, ինչպես նաև ողջ երկրի սոցիալական, տնտեսական, էկոլոգիական և այլ խոշոր պրոբլեմների լուծման գործին ակտիվորեն մասնակցելու ամենամեծ հնարավորություններով։

Երևանի պետական համալսարանը, որը հանրապետության տարեկիցն է, իր գոյության տարիներին պատրաստել է ավելի քան 35 հազար բարձրորակ աշխատողներ ժողտնտեսության տարբեր ճյուղերի համար։ Իր ուսումնադաստիարակչական և գիտական կարողությամբ Երևանի համալսարանը երկրի առաջատար բուհերից մեկն է և միանգամայն հասկանալի է, որ գիտության

ջողությամբ ավարտել են մյուս բուհերը և կազմակերպչական կառավարչական աշխատանքի ունակություններ են դրսևորել: Հասկանալի է, որ նման ֆակուլտետներում ուսման տևողությունը կարող է լինել սովորականից զգալիորեն կարճ:

Կառավարչական կադրերի պատրաստումը կառավարման լենինյան գիտության տիրապետման հետ մեկտեղ պետք է ընդգրկի սովորողների գաղափարական ու բարոյական դաստիարակումը: Այս խնդիրը խիստ հրատապություն է ձեռք բերում զարգացած սոցիալիզմի պայմաններում, երբ «սոցիալական և տնտեսական մեծ վերափոխումների հետ միասին տեղի է ունենում մարդկային լավագույն հատկանիշների՝ կոմունիստական հասարակության մարդու հատկանիշների ձևավորման ակտիվ պրոցեսը»:

Ուսանող երիտասարդության գաղափարական պատրաստման գործում հատուկ դեր է պատկանում համալսարաններին: Համալսարաններն ունեն հասարակագիտական և հումանիտար ամբիոնների ճյուղավորված ցանց, դասախոսների որակավորման բարձրացման կազմակերպման, մյուս բուհերի հասարակագիտական ամբիոններին տեսական ու մեթոդական օգնություն ցույց տալու մեծ հնարավորություններ: Համալսարանները պարտավոր են դասախոսների բարձրորակ կադրերով ապահովել նաև երկրի բոլոր բուհերի նման ամբիոններին:

Կադրերի գաղափարական դաստիարակությունը, հասկանալի է, չի հանգում միայն տեսության յուրացմանը: Գլխավորն այն է, որպեսզի ուսանողների մասնագիտական գիտելիքներն ու մարքս-լենինյան աշխարհայացքը հաջողությամբ կիրառվեն նրանց պրակտիկ գործունեությունում: Այլ կերպ ասած, անհրաժեշտ է, որպեսզի նրանց ուսուցման և գաղափարական դաստիարակության ընթացքում բուհում ստեղծվեն գիտելիքների, համոզմունքների և պրակտիկ գործողությունների միասնության ամուր հիմքեր:

Ի վերջո, հարկ է շեշտել, որ բարձրագույն դպրոցի այն կենսական խնդիրները, որ առաջադրեց ՍՄԿԿ XXVI համագումարը, կարող են հաջողությամբ իրականացվել յուրաքանչյուր բուհի առանձնահատկությունները համակողմանիորեն հաշվի առնելու և այդ հիման վրա կոնկրետ խնդիրների լուծման համար դրանց պատասխանատվությունը բարձրացնելու պայմանով՝ սկսած ուսանողների ընդունելությունից, ուսումնական պրոցեսի կազմակերպումից և վերջացրած գիտական հետազոտություններով, արտադրության մեջ դրանց ներդրումով:

«Коммунист», № 13, 1981 г.

# ԳԻՏԱՏԵԽՆԻԿԱԿԱՆ ԻՆՖՈՐՄԱՑԻԱՅԻ ՀԱՄԱԿԱՐԳԻ ԿԱՏԱՐԵԼԱԳՈՐԾՈՒՄԸ

Դ. Բ. ՍԱՐԳՍՅԱՆ

ՍՄԿԿ XXVI ՀԱՄԱԳՈՒՄԱՐԸ բացառիկ ուշադրություն նվիրեց գիտության հետագա զարգացմանը, գիտատեխնիկական առաջընթացի արագացմանը: Համագումարի որոշումներում նախատեսված են գիտատեխնիկական պոտենցիալի հետագա աճի և դրա օգտագործման արդյունավետությունը բարձրացնելու մի շարք կոնկրետ միջոցառումներ:

ՍՍՀՄ տնտեսական ու սոցիալական զարգացման 1981—1985 թվականների և մինչև 1990 թվականն ընկած ժամանակաշրջանի հիմնական ուղղություններում խնդիր է դրված. «Ապահովել հասարակության հետագա տնտեսական առաջընթաց, նյութատեխնիկական բազայի որակական խոր տեղաշարժեր՝ գիտատեխնիկական առաջընթացի արագացման, հանրային արտադրության ինտենսիվացման, նրա արդյունավետության բարձրացման հիման վրա» (ՍՄԿԿ XXVI համագումարի նյութերը, էջ 221):

Մեծ խնդիրներ են դրված գիտության առջև, քանի որ էկոնոմիկայի ինտենսիվացման կուրսի իրագործումը պահանջում է առավել բարձրացնել հետազոտությունների արդյունավետությունը, արտադրության մեջ արագորեն ներդնել գիտության ու տեխնիկայի նվաճումները:

Ինչպես նշում է ակադեմիկոս Գ. Ի. Մարչուկը, այժմ «գիտությունն ու տեխնիկան հետզհետե վերածվում են հասարակական առաջընթացի ավելի կարևոր գործոնների, շոշափելի փոփոխություններ ապահովելով ո՛չ միայն նյութական արտադրության ոլորտում, այլև սոցիալական պրոցեսների կառավարման, նոր հասարակության մարդկանց կերպավորման գործում» (Проблемы мира и социализма, № 7, 1981, стр. 21), այսինքն՝ արդի փուլում անչափ մեծանում է գիտության սոցիալական դերը:

80-ական թվականներին գիտության զարգացման բնորոշ առանձնահատկությունը գիտահետազոտությունների նպատակային գործնական ուղղվածությունն է, գիտաարդյունքների գործնական ծավալուն իրացումը:

Այս կապակցությամբ 1981—1985 թվականների համար մշակվել և հաստատվել են 160 միջճյուղային գիտատեխնիկական կոմպլեքսային ծրագրեր, որոնց նպատակն է վերջնական ժողովրդատնտեսական արդյունքը և որոնք կոչված են նպաստելու երկրի գիտատեխնիկական պոտենցիալի առավել լիվին օգտագործմանը: Ընթացիկ հնգամյակում լուծվելիք գիտատեխնիկական կարևորագույն պրոբլեմներից է գիտատեխնիկական ինֆորմացիայի (ԳՏԻ) պետական ավտոմատացված սիստեմի ստեղծումը:

1981 թվականի մարտին ՍՍՀՄ գիտությունների ակադեմիայի ընդհանուր ժողովը կոնկրետացրեց գիտության խնդիրները և շեշտեց գիտական այն հետազոտությունների ընդլայնելու անհրաժեշտությունը, որոնց արդյունքներով է առավելապես պայմանավորվում հանրային արտադրության արդյունավետության հետագա աճը: Այդ խնդիրների թվում իր տեղն ունի նաև ինֆորմացիայի հաղորդման և մշակման մեթոդների ու միջոցների պրոբլեմը:

Այս ասպարեզում մեծ է գիտատեխնիկական ինֆորմացիայի պետական

Հնգամյակի սոցիալ-տնտեսական պրոբլեմները

# ՀՆԳԱՄՅԱԿԸ ԵՎ ԵՐԿՐԱԲԱՆԱԿԱՆ ԳԻՏՈՒԹՅՈՒՆՆԵՐԻ ԽՆԴԻՐՆԵՐԸ

**Հ. Գ. ՄԱՂԱՔՅԱՆ**
ՀՍՍՀ ԳԱ իսկական անդամ, երկրի մասին գիտությունների բաժանմունքի ակադեմիկոս քարտուղար

ՀԱՆՐԱՊԵՏՈՒԹՅՈՒՆՈՒՄ երկրաբանական գիտությունների զարգացումը երկրի համար ունի մեծ, առաջին հերթին, կիրառական նշանակություն։ Իր տարածքով փոքր (ընդամենը մոտ 30 հազար ք. կմ) Հայկական ՍՍՀ-ն գյուղատնտեսության զարգացման առումով ունի համեմատաբար սահմանափակ հեռանկարներ, բայց նրա ընդերքը հարուստ է հանքային ռեսուրսներով, հատկապես մետաղային (պղինձ, մոլիբդեն, երկաթ և այլն), ինչպես նաև բազմազան ոչ-մետաղային օգտակար հանածոներով (տուֆ, պեմզա, պեռլիտ, բազալտ, մարմար, դիատոմիտ, բենտոնիտ, քարաղ և այլն)։

Երկրաբանական գիտությունների զարգացումը Հայաստանում բնորոշվում է հարապետության երկրաբանական կառուցվածքի ինտենսիվ ուսումնասիրմամբ ու այդ հիման վրա օգտակար հանածոների հանքավայրերի առաջացման պայմանների ու տեղաբաշխման օրինաչափությունների բացահայտմամբ։

Հանրապետության տարածքի մեծ մասի բարձր սեյսմիկության պայմաններում շատ հրատապ պրոբլեմ է երկրաշարժերի կանխատեսման մշակումը, իսկ հանգած հրաբուխների լայն տարածումը պայմանավորում է մոտ անցյալում դրանց գործունեության և, վերջինիս հետ կապված, հրաբխային նյութերի մանրազնին ուսումնասիրման կարևորությունը։

Ի վերջո, երկրաբանական իմաստով երիտասարդ լեռնային ապարների հասակը և խորքում լրիվ չսառած մագմատիկ օջախների առկայության հավանականությունը հնարավորություն են ընձեռում հիմնավորելու ընդերքի ստորերկրյա ջերմության օգտագործման հնարավորությունների, ինչպես նաև խորքային օջախների ու հրաբխականության հետ ուղղակի կամ անուղղակի կապված բազմաթիվ, այդ թվում և բուժիչ հույժ արժեքավոր, մասամբ թերմալ, հանքային աղբյուրների ուսումնասիրումը։

Մեր հանրապետության բնատարածքի կտրտված լեռնային ռելիեֆի առանձնահատկությունները, խիտ բնակչության ինտենսիվ տեխնոգեն գործունեությունը հարուցում են այնպիսի ավերիչ բնական երևույթներ, ինչպիսին են սողանքներն ու հեղեղները, որոնց դեմ, անտարակույս, անհրաժեշտ է միջոցներ ձեռք առնել ինժեներային երկրաբանության և հիդրոլոգիայի մասնագետների խորհուրդների հիման վրա։

Վերը նշված երևույթների ուսումնասիրման համար պահանջվում է երկրաբանների, երկրաֆիզիկոսների, երկրաքիմիկոսների, սեյսմոլոգների սերտ համագործակցությունը։ Այդ կարևոր հանգամանքն է հաշվի առնվել գիտու-



երկրաբանական գիտությունների (ԵԳԻ—
թյունների ակադեմիայի ցանցում երկրաբանական գիտությունների (ԵԳԻ— Երևանում) և երկրաֆիզիկայի ու ինժեներային սեյսմոլոգիայի (ԳԻՍԻ— Լենինականում) ինստիտուտների հիմնադրման ժամանակ։ Այդ խոշոր ինստիտուտները մտնում են գիտություններ երկրի մասին բաժանմունքի կազմի մեջ։

Ակադեմիայի ցանցից դուրս, նշված ինստիտուտների հետ սերտորեն համագործակցելով, այդ պրոբլեմներով զբաղվում են նաև Հայկական ՍՍՀ երկրաբանական վարչությունը, Երևանի պետհամալսարանի երկրաբանական և պոլիտեխնիկական ինստիտուտի լեռնամետալուրգիական ֆակուլտետներն ու հանրապետական մի շարք այլ կազմակերպություններ։

Ի՞նչ ունենք առ այսօր իբրև այդ աշխատանքների արդյունք ու ի՞նչ խնդիրներ են դրված երկրաբանական գիտությունների առջև մոտակա տարիներին։

Երկրաբանները կազմել են տարբեր մասշտաբի երկրաբանական քարտեզներ, որոնք հիմք են ծառայել մի շարք մասնագիտացված կանխատեսումային-մետաղածին, խզումային տեկտոնիկայի, հիդրոերկրաբանական, մագմատիզմի ու հրաբխականության, սեյսմոտեկտոնական և այլ քարտեզների ստեղծման համար։

Դրանք կազմելիս լայնորեն օգտագործվել են երկրաֆիզիկական ուսումնասիրությունների տվյալները, հաշվի են առնվել տիեզերական նկարահանումների արդյունքները, որոնք նպաստում են խորքային երկրաբանական կառուցվածքի ճշգրտմանը, օգտակար հանածոների հանքավայրերի, ինչպես և սեյսմոակտիվ զոնաների տեղանքը հսկող ռեգիոնալ խզումների հայտնաբերմանը։

Բավական շոշափելի է Հայաստանի երկրաբանների, երկրաֆիզիկոսների, երկրաքիմիկոսների ներդրումը հանքային-հումքային բազայի ստեղծման ու զարգացման գործում։ Այդ աշխատանքները պսակվել են երկաթի, հետաքրքրական բարձրորակ հանքանյութերի, պղինձ-մոլիբդենային, պղնձի, բազմամետաղային, ծարիրի ու սնդիկի, այլ մետաղների, ինչպես նաև բենտոնիտային կավերի, պեռլիտի, պեմզայի, դիատոմիտի, քարաղի և օգտակար հանածոների այլ տեսակների հանքավայրերի հայտնաբերմամբ ու ուսումնասիրմամբ։ Պատահական չէ, որ մետաղային հանքավայրերի հարստությամբ ու բազմազանությամբ Հայկական հանրապետության տարածքը հաճախ անվանում են փոքր Ուրալ։

Շատ զարգացած ու բավական խոշոր մետաղային հանքավայրերից հարկ է նշել ամենից առաջ հրաքարայինները (պղնձի ու բազմամետաղային)— Ալավերդին, Շամլուղը, Ախթալան, Ղափանը, Շահումյանը, Հանքաձորը և այլ վայրեր, ներկայացված պիրիտխալկոպիրիտային կամ գալենիտ-սֆալերիտային, հաճախ այլ մետաղներ պարունակող հանքանյութերի հոծ շտոկներով, երակներով, ապարազանգվածներով (շտոկվերկներով)։ Մյուսը նույնպես լայն տարածված պղինձ-մոլիբդենային երակիկա-ցանավոր տիպն է (պղնձի պորֆիրային հանքավայրեր). մեր հանրապետությունում այդ տիպը ներկայացված է Քաջարանի, Ագարակի, Դաստակերտի, Հանքավանի և այլ հանքավայրերով, որոնք կազմում են հյուսիս-արևմուտքից դեպի հարավ-արևելք տարածված Փամբակ—Զանգեզուրի պղինձ-մոլիբդենային հանքային գոտին։

Վերջին երկու-երեք տասնամյակներում հանրապետության երկրաբանները բացահայտեցին ևս երկու այլ խմբի մետաղային հանքավայրերի՝ երկաթի տարբեր տիպերի ու ազնիվ մետաղների հանքանյութերի մեծ դերը։

Երկաթի հանքավայրերը ներկայացված են գլխավորապես մագնետիտային կամ տիտանոմագնետիտային, ավելի հազվադեպ՝ հեմատիտային հանքանյութերով. տիտանոմագնետիտային հանքանյութերը պաշարների տեսակետից կազմում են խոշոր հանքակուտակումներ գաբրո-պիրոքսենիտների զանգվածներում (Սվարանց և այլն), ապատիտ-մագնետիտային հանքանյութերը տեղակայվում են երիտասարդ անդեզիտներում (Աբովյան կամ Կապուտան), սկառնային մագնետիտային հանքավայրերը հարում են գրանիտոիդների և ներփակող ապարների սահմաններին (Հրազդան, Աղավնաձոր, Բազում, Կողբի խումբը և այլն)։ Ավելի քիչ են հանդիպում քվարց-հեմատիտային երակային հիդրոթերմալ հանքանյութերը, էքսհալյացիոն-նստվածքային յակոբսիտ-մագնետիտային, երկաթամանգանային հանքավայրերը (Ջայքենդ), մագնետիտային

շարներ երկաթի, տիտանի, վանադիումի, մագնիումի, հավանաբար նաև պլատինոիդների կորզման համար:

Այժմ շահագործվում է միայն Զոդի ազնիվ մետաղների հանքավայրը, այն էլ արժեքավոր բաղադրամասերի (տելլուր, բիսմուտ, արծաթ և այլն) մեծ կորուստներով, որոնք հանքանյութերից չեն կորզվում: Ազնիվ մետաղների կոմպլեքսային հանքանյութեր և հետախուզված պաշարներ ունեցող մի շարք հանքավայրեր առայժմ չեն օգտագործվում. դրանցից են Շահումյանի, Թեյ—Լիճքվազի, Արմանիսի, Մեղրաձորի, Ազատեկի և այլ հանքավայրերը: Չեն մշակվում կապարի ու ցինկի, քրոմի, մանգանի, տիտանի, վանադիումի, վոլֆրամի, մկնդեղի, ծարիրի, սնդիկի և այլ մետաղների ոչ մեծ պաշարներ ունեցող և անբավարար ուսումնասիրված հանքավայրերը:

Ոչ-մետաղային օգտակար հանածոների հանքավայրերից հանրապետության համար մեծ նշանակություն ունեն ու մշակվում են բենտոնիտի (Իջևանի շրջանում), պեռլիտի, տուֆի, բազալտի, քարաղի հանքավայրերը, հեռանկարային են դիատոմիտի (Սիսիանի և այլ շրջաններում), մարմարի, ագատի, հրակայուն ապարների հանքավայրերը:

Երկրաբանների խնդիրն է մոտակա տասնամյակներում (մինչև 1990—2000 թթ.) ընդլայնել շահագործվող հանքավայրերի հումքային ռեսուրսները, մանավանդ Ղափանի ու Ալավերդու խմբի պղնձի հանքերում, Ագիդբեկովի ու Եղեգնաձորի շրջանների կապարի ու ցինկի հեռանկարային հանքավայրերում, Արզականի ոսկի պարունակող տիտանաբեր թերթաքարերի հանքերում:

Միաժամանակ, հաշվի առնելով ՍՍՀՄ ու այլ երկրների երկրաբանների նվաճումներն ու փորձը, անհրաժեշտ է ուշադրություն դարձնել հանքավայրերի նոր տիպերի վրա, որոնց հնարավոր է հայտնաբերել հանրապետության տարածքում՝ վոլֆրամի (շեելիտի), պղնձի, կապարի ու ցինկի շերտաձև, ինչպես նաև բերիլիումի, նիոբիումի և այլ հազվագյուտ մետաղների հանքավայրեր սկառնային (կոնտակտային) զոնաներում և հրաբխածիններում:

Ինչ վերաբերում է ոչ-մետաղային օգտակար հանածոներին (բենտոնիտ, պեռլիտ, դիատոմիտ և այլն), ապա անհրաժեշտ է հումքի արտահանման փոխարեն կազմակերպել դրանց ռացիոնալ օգտագործումն ու վերամշակումը տեղում մինչև արդյունաբերական արտադրանքի ստացումը:

Հաշվի առնելով հանրապետությունում ջերմաէներգետիկ ռեսուրսների պակասը, երկրաբանական գիտությունների առջև դրված է մի կարևոր խնդիր՝ հիմնավորել նավթագազաբերության" ուսումնասիրման վերսկսված աշխատանքները, որոնց նպատակն է պարզել հանրապետության տարածքի նավթագազաբերության հեռանկարները և ընտրել երկրաֆիզիկական ու երկրաքիմիական տվյալներով հիմնավորված ստրուկտուրաներ, խոր հորատանցքեր (մինչև 5—6 կմ) հորատելու համար:

Այդ աշխատանքները չեն բացառում գեոթերմիկական ուսումնասիրությունների կազմակերպումը, որոնց վերջնական նպատակն է ստորգետնյա ջերմության օգտագործումը. դրա հետ մեկտեղ պետք է ընդլայնել նաև հելիոտեխնիկայի գծով տարվող աշխատանքները, քանի որ արեգակնային էներգիայի օգտագործումը մեզ մոտ անկասկած ունի որոշակի հեռանկարներ:

Մոտակա երկու տասնամյակներում սեյսմոլոգների բոլոր ջանքերը պետք է ուղղվեն երկրաշարժերի կանխատեսման հարցերի լուծմանը, դրանց նախանշանների որոշմամբ և ո՛չ միայն տեղի և ուժի, այլև տևողության կանխատեսմամբ, ապահովելով վտանգավոր շրջանների բնակչության ազդարարումը ավտոմատացված սիստեմի միջոցով: Այդ ասպարեզում մեծ է սեյսմոկանխատեսական պոլիգոնների, հատկապես Գառնիի ստորերկրյա տիեզերական երկրաֆիզիկական դիտարանի դերը:

Սրտացավ, հոգածո վերաբերմունք մարդու կյանքի պահպանության, նրա բարօրության, հոգատարություն հայրենիքի հարստությունների նկատմամբ՝ կարևորագույն և առաջնահերթ մի խնդիր, որի լուծման գործում անգնահատելի է սովետական գիտնականների դերը:

---

# ՈՒՐԲԱՆԻԶԱՑԻԱՆ ԵՎ ԳՅՈՒՂԱԿԱՆ ԲՆԱԿՉՈՒԹՅՈՒՆԸ

**Ն. Մ. ՄԱՆԱՍԵՐՅԱՆ**
Տնտեսական գիտությունների դոկտոր

## ՈՒՐԲԱՆԻԶԱՑԻԱՅԻ ՄԻՏՈՒՄՆԵՐԸ ԵՎ ՀԵՏԵՎԱՆՔՆԵՐԸ

ՀԱՅԿԱԿԱՆ ՍՍՀ-Ն ԻՆԴՈՒՍՏՐԻԱԼ հանրապետություն է, որտեղ արդյունաբերության մեջ զբաղված է նրա աշխատավորության ամենաստվար զանգվածը: Այս ճյուղին բաժին է ընկնում հանրապետության ազգային եկամտի 58,5 տոկոսը: Շինարարության հետ միասին այդ թիվը հասնում է 76 տոկոսի: Արդյունաբերության անմիջական ազդեցությունը դրսևորվում է նաև քաղաքային բնակչության մեծ տեսակարար կշռով և արագ աճով:

Եթե 1959 և 1979 թթ. մարդահամարների տվյալներով ՍՍՀՄ բնակչությունն ավելացել է 25,7, իսկ քաղաքային բնակչությունը՝ 63,6 տոկոսով, ապա Հայկական ՍՍՀ-ում այդ թվերը համապատասխանաբար կազմել են 72 և 126 տոկոս: Այսինքն՝ ՀՍՍՀ-ի բնակչությունն ընդհանրապես և քաղաքային բնակչությունը՝ մասնավորապես ավելացել են երկրի միջինից բարձր տեմպերով:

Նույնն է վկայում նաև նյութական արտադրության երկու գլխավոր ճյուղերի զարգացման տեմպերի համեմատությունը: ՀՍՍՀ արդյունաբերության համախառն արտադրանքի ծավալը 1970—1978 թթ. ընթացքում ավելացել է 82 տոկոսով, մինչդեռ գյուղատնտեսության բոլոր ճյուղերի արտադրանքը՝ միայն 31 տոկոսով: Համեմատության համար նշենք, որ նույն ցուցանիշների աճը նշված ժամանակաշրջանում ՍՍՀՄ մասշտաբով կազմել է համապատասխանաբար 72 և 24 տոկոս:

Ուրբանիզացիան դարձել է արդի քաղաքակրթության բնորոշ առանձնահատկությունը: Միլիոնանոց Երևանն այսօր Սովետական Հայաստանի սոցիալ-կուլտուրական և տնտեսական առաջընթացի խորհրդանիշն է: Միաժամանակ չպետք է աչքաթող անել նաև մեր հանրապետության ինտենսիվ ուրբանիզացիայի հետևանք հանդիսացող որոշ պրոցեսներ և պրոբլեմներ:

Ինտենսիվ ուրբանիզացիան լուրջ անհամամասնություններ է հարուցում հանրապետության ժողովրդական տնտեսության հիմնական ճյուղերի միջև: Վիճակագրական տվյալներով, 1960—1979 թթ. ՀՍՍՀ գյուղատնտեսության արտադրանքը համադրելի գներով ավելացել է 83, իսկ բնակչությունը՝ 72 տոկոսով: Այսպիսով, այն ընդամենը 11 տոկոսով է գերազանցել բնակչության աճին, որի հետևանքով մեկ շնչին ընկնող գյուղատնտեսական արտադրանքի ծավալն ավելացել է 6,7 տոկոսով:

Այստեղ առավել կարևորը գյուղատնտեսական արտադրանքի և քաղաքային բնակչության աճի համեմատությունն է, քանի որ քաղաքից է սպառող բնակչության հիմնական զանգվածը: Երկրում գյուղատնտեսական արտադրանքի ծավալը հիշյալ ժամանակաշրջանում ավելացել է գրեթե նույն տեմպերով, ինչ որ քաղաքային բնակչությունը: Այլ է պատկերը Հայկական ՍՍՀ-ում, որտեղ

աչքի է ընկել գյուղական բնակավայրերի համեմատաբար խոշոր չափերով, որը մեզ համար բնորոշ է նաև այսօր։ Այսպես, եթե երկրի մասշտաբով գյուղական մեկ բնակավայրը (1976 թ.) միջին հաշվով ուներ 237 բնակիչ, ապա Հայկական ՍՍՀ-ում այն կազմում էր 1085, իսկ վերջին տարիներին՝ 1180 բնակիչ, որը գերազանցում է ՍՍՀՄ միջին ցուցանիշը 4,8 անգամ և միութենական հանրապետությունների մեջ զիջում է միայն Մոլդավիային։

Սովետական իշխանության տարիներին ինչպես ամբողջ երկրում, այնպես էլ Հայաստանում տեղի է ունեցել գյուղական բնակավայրերի խոշորացում, զգալի չափով կրճատվել է մանր գյուղերի թիվը։ Այդ միտումը կշարունակվի նաև հետագայում, հասկանալի է՝ որոշակի սահմաններում, հաշվի առնելով հանրապետության առանձնահատկությունները։

Անցյալում երկրի մի շարք շրջաններում գյուղական բնակավայրերն ընդունված էր դասակարգել «հեռանկարայինի» և «անհեռանկարայինի», ընդ որում վերջինները ենթակա էին աստիճանական վերացման։ Ինչ խոսք, սխալ է գյուղական բնակավայրերի «դասակարգման» նկատմամբ նման հախուռն վերաբերմունքը։ Մասնավորապես Սովետական Հայաստանում, ուր գյուղական բնակավայրերն աչքի են ընկնում իրենց մեծ չափերով, ամեն մի կոնկրետ դեպքում պետք է ելնել տվյալ բնակավայրը հեռանկարում պահպանելու և զարգացնելու անհրաժեշտությունից։ Ուստի չի կարելի համաձայնել այն տնտեսագետների հետ, որոնց կարծիքով գյուղի սոցիալ-տնտեսական առաջընթացը հեռանկարում պետք է հանգեցնի և՛ գյուղական բնակավայրերի, և՛ գյուղական բնակչության զգալի կրճատման։ Ինչպես վիճակագրությունն է վկայում, թեև վերջին 20 տարում հանրապետության գյուղական բնակավայրերը որոշ չափով կրճատվել են, գյուղական բնակչության թիվն ընդհանուր առմամբ ավելացել է։ Այսպես, 1959 և 1970 թթ. մարդահամարների տվյալներով, ՀՍՍՀ գյուղական բնակավայրերը կրճատվել և 1092-ից հասել են 931-ի, մինչդեռ գյուղական բնակչության ընդհանուր թիվն ավելացել է՝ 881,2 հազարից հասնելով 1.010,4 հազարի։ 1979 թ. մարդահամարի տվյալներով գյուղական բնակավայրերի թիվը իջել էր արդեն 916-ի, մինչդեռ դրանց բնակչության թիվը աճել է 28 հազարով և կազմել 1.038,1 հազար մարդ։

Այստեղից հետևում է, որ գյուղական բնակչության թիվը որոշակիորեն կայունացել է և նույնիսկ աճի միտում է դրսևորվում։ Հիմքեր կան պնդելու, որ գյուղական բնակչության ավելացման այս միտումը հեռանկարում ավելի որոշակի կդառնա։ Դա պայմանավորված է հետևյալ հանգամանքներով։ Ամենից առաջ դրան է նպաստում ՀԿԿ Կենտկոմի և հանրապետության կառավարության, տեղական կուսակցական ու սովետական մարմինների հետևողական գործունեությունը, որն ուղղված է գյուղական բնակչության նյութական ու կուլտուրական մակարդակի անշեղ բարձրացմանը, բնակավայրերի բարեկարգմանը, հաղորդակցության ճանապարհների ու միջոցների բարելավմանը, գյուղում կենցաղային, կոմունալ, կուլտուրական անհրաժեշտ պայմանների ստեղծմանը։ Կարևոր գործոն է գյուղական բնակավայրերում (շրջաններում) արդյունաբերության և ժամանակակից էկոնոմիկայի մյուս ճյուղերի ակտիվ զարգացումը, որը մեծապես ընդլայնում է գյուղական բնակչության զբաղվածության և արտադրության մեջ բնակչության նոր կոնտինգենտի ներգրավման հնարավորությունները։

Նույն հետևանքին է հանգեցնում նաև գյուղական բնակավայրերի խոշորացումը, որը չնայած ուժեղացնում է գյուղական բնակչության ներքին միգրացիոն շարժերը, միաժամանակ կրճատում է նրա արտաքին (գյուղից՝ քաղաք) միգրացիան։ Դա բացատրվում է նրանով, որ խոշոր բնակավայրերում ընդարձակվում են սոցիալական ինֆրակառուցվածքի համակողմանի զարգացման, դրա հիման վրա բնակչության բարեկեցության բարձրացման հնարավորությունները։

Եվ, վերջապես, միջտնտեսային և ագրոարդյունաբերական ինտեգրացման պրոցեսների զարգացումը օբյեկտիվորեն հանգեցնում է նոր ֆունկցիոնալ բնակավայրերի ստեղծմանը, բնակավայրեր, ուր զուգորդվում են տարբեր արտադրական ֆունկցիաները՝ կապված ինչպես գյուղատնտեսության, այնպես էլ



արդյունաբերության, տրանսպորտի, առևտրի, զանազան ծառայությունների հետ։ Ագրոարդյունաբերական բնույթի բնակավայրերում մարդիկ աշխատանքի տեսակի և ոլորտի ընտրության ավելի լայն հնարավորություն ունեն՝ սեզոնային գյուղատնտեսական աշխատանքը տարվա ընթացքում համատեղել էկոնոմիկայի մյուս ճյուղերում կատարվող աշխատանքի հետ։

Այսպիսով, գյուղատնտեսական արտադրության մեջ զբաղված բնակչության աստիճանական կրճատման հետ մեկտեղ գյուղական բնակչությունը ո՛չ միայն չի նվազի, այլև կավելանա։ Գյուղական և գյուղատնտեսական բնակչության այդպիսի հակադարձ տեղաշարժի միտումը միանգամայն օրինաչափ է այսօրվա և վաղվա գյուղի սոցիալ-տնտեսական առաջընթացի տեսակետից։

Նշված օրինաչափությունների ճիշտ ընկալումը պահանջում է համապատասխան ձևով և ժամանակին կողմնորոշել հանրապետության լեռնային շրջանների սոցիալ-տնտեսական զարգացումը։ Ամենից առաջ դա նշանակում է արտադրաուժերի տեղաբաշխման ընթացքում հատուկ ուշադրություն դարձնել այն լեռնային շրջաններին և բնակավայրերին, որտեղ առավել նկատելի է բնակչության արտահոսքը։ Այդ շրջաններում, բնականաբար, պահանջվում է ավելի մեծ ներդրումներ կատարել, ավելի բարձր տեմպերով զարգացնել արդյունաբերությունը և հաղորդակցության միջոցները, կուլտուրայի և կենցաղի ծառայությունը։

Հարկ է մեծ ուշադրություն նվիրել նաև լեռնային շրջաններում աշխատավորների հանգստի և տուրիզմի ինդուստրիայի ու դրանց հետ կապված զանազան ծառայությունների զարգացմանը, նկատի ունենալով, որ մեր հարուստ և գեղեցիկ լեռնաշխարհի հնարավորություններն այսօր աննշան չափով են օգտագործվում։ Դրան զուգահեռ անհրաժեշտ է ըստ ամենայնի խրախուսել ժողովրդական արհեստների, տնայնագործության զարգացումը, որոնց հիման վրա նպատակահարմար է կազմակերպել բազմազան հուշանվերների արտադրություն։ Էկոնոմիկայի այս ճյուղի զարգացումը մեր հանրապետությունում մեծ հեռանկարներ ունի թեկուզև զուտ տնտեսական առումով. այդ ճյուղը շահութաբեր է և միաժամանակ աշխատատար, ընդ որում այստեղ պահանջվում են բարձր կուլտուրա և որակավորում ունեցող կադրեր։ Ուստի տուրիզմի, հանգստի ինդուստրիայի, արհեստների զարգացումը լեռնային շրջաններում ո՛չ միայն զգալի թվով նոր աշխատատեղեր կստեղծի, այլև կնպաստի այդ շրջանների բնակչության կուլտուրական մակարդակի հետագա բարձրացմանը։

Վերջապես, այս առումով որոշակի դեր կարող է խաղալ բնակչության միջհանրապետական միգրացիայի կարգավորումը։ Ժամանակն է բնակչության մեխանիկական աճը կարգավորել պլանավորված եղանակով, մասնավորապես այն ուղղել դեպի հանրապետության ծայրամասային լեռնային շրջաններ։ Այդ նպատակով անհրաժեշտ է իրականացնել կապիտալ ներդրումների գիտականորեն հիմնավորված այնպիսի տեղաբաշխումը, որը կբխի լեռնային շրջանների սոցիալ-տնտեսական զարգացման պահանջից։

# ԱՐՏԱԴՐԱՆՔԻ ՆՅՈՒԹԱՏԱՐՈՒԹՅԱՆ ԿՐՃԱՏՄԱՆ ԺՈՂՈՎՐԴԱՏՆՏԵՍԱԿԱՆ ՆՇԱՆԱԿՈՒԹՅՈՒՆԸ

**Ռ. Ա. ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ**

*ԶԱՐԳԱՑԱԾ ՍՈՑԻԱԼԻԶՄԻ ՀԱՄԱՐ* ընդհանուր օրինաչափություն է այն, որ նվազում են արտադրանքի մեկ միավորին բաժին ընկնող առարկայացված աշխատանքի բացարձակ չափերը, սակայն դա կատարվում է ավելի դանդաղ, քան կենդանի աշխատանքի տեսակարար ծախսումների նվազումը: Դրա հետևանքով ընդհանուր առմամբ աճում է առարկայացված աշխատանքի ծախսումների բաժինն արտադրանքի մեկ միավորի արժեքում: Սակայն նյութական ծախսումների բաժնի մեծացումը, եթե դա կապված չէ արտադրանքի մեկ միավորի հաշվով այդ ծախսումների բացարձակ մեծության ավելացման հետ, չի նշանակում արտադրության տնտեսական արդյունավետության իջեցում:

Գիտատեխնիկական հեղափոխությունն արտադրության աճի գործոնների մեջ հարուցել է քանակական և որակական զգալի փոփոխություններ, որոնք նպաստում են արտադրության արդյունավետության բարձրացման հնարավորությունների ավելացմանը՝ առարկայացված հասարակական աշխատանքի, այսինքն՝ նյութական ռեսուրսների օգտագործումը բարելավելու և նյութական ծախսումները կրճատելու հաշվին:

Նյութական ռեսուրսների օգտագործման արդյունավետության բարձրացման ժողովրդատնտեսական կարևորությունը պահանջում է լրջորեն ուսումնասիրել սույն պրոբլեմը և այդ հիման վրա կատարելագործել դրա պլանավորումը:

«Խնայողության ռեժիմի լենինյան լոզունգը,— նշել է ընկեր Լ. Ի. Բրեժնևը,— ոչ թե ժամանակավոր կոչ է, այլ մեր սոցիալիստական հասարակության բոլոր անդամներին ներկայացվող մշտական պահանջ: Մեր երկիրն առավել կուժեղանա և կհարստանա, մեր առաջընթացը դեպի կոմունիզմ առավել կարագանա, եթե մենք սովորենք խնայել աշխատաժամանակի ամեն մի րոպեն, հումքի ու վառելիքի ամեն մի գրամը, մեքենայի ամեն մի դետալը, աշխատանքային յուրաքանչյուր կոպեկը» (Լենինյան կուրսով: Ճառեր և հոդվածներ: Հ. 2, «Հայաստան» հրատ., 1970, էջ 778):

Գիտատեխնիկական առաջընթացի տեմպերի արագացման և հանրային աշխատանքի արտադրողականության աճին զուգընթաց, անընդհատ ավելանում է առարկայացված աշխատանքի ծախսումների տեսակարար կշիռն արտադրանքի արժեքում: «Աշխատանքի արտադրական զարգացմանը զուգընթաց հումքի արժեքը կազմում է ապրանքային արդյունքի արժեքի հարաճուն բաղկացուցիչ մասը...» (К. Маркс и Ф. Энгельс. Соч., т. 25, ч. I, стр. 121): Եթե 1930 թվականին նյութական ծախսումների բաժինը մեր երկրի արդյունաբերական արտադրանքի արժեքում կազմում էր 31,9 տոկոս, իսկ 1960 թվականին՝ 77,5 տոկոս, ապա 1978 թվականին այն հասավ 80,4 տոկոսի:



Երկրի տնտեսական պոտենցիալի աճը, վերամշակվող նյութերի աճած ծավալները և դրանց բաժնի մեծացումը արտադրության ծախքերի մեջ հրամայաբար պահանջում են տնտեսական աճի ինտենսիվ գործոնների առավել լայն օգտագործման հիման վրա բարձրացնել հանրային արտադրության արդյունավետությունը: «Էներգիայի և հումքի ոլորտում երկրի պահանջմունքներն անընդհատ աճում են, իսկ դրանց արտադրությունն ավելի ու ավելի թանկանում է,— ՍՄԿԿ XXV համագումարում ասաց ընկեր Լ. Ի. Բրեժնևը:— Հետևաբար, կապիտալ ներդրումները չափից ավելի չմեծացնելու համար հարկավոր է հասնել ռեսուրսների առավել ռացիոնալ օգտագործման, այդ թվում՝ արտադրանքի նյութատարությունը կրճատելու, առավել էժան և արդյունավետ նյութեր կիրառելու, ինչպես նաև դրանք խնայողաբար ծախսելու հաշվին» (ՍՄԿԿ XXV համագումարի նյութերը: «Հայաստան» հրատ., 1976, էջ 64—65):

Նյութական ռեսուրսների պլանավորումը կատարելագործելու և ժողովրդական տնտեսության մեջ դրանց օգտագործման վերաբերյալ մեթոդական դրույթներ և կոնկրետ հանձնարարականներ կազմելու մեթոդոլոգիական առավել կարևոր հարցը նյութատարության տնտեսական կատեգորիայի էության սահմանումն է: Նյութատարությունը վերաբերում է տնտեսական այն կատեգորիաների թվին, որոնց բովանդակությունն ու սահմանման մեթոդոլոգիան կարիք ունեն հետագա հետազոտման: Դա վերաբերում է, մասնավորապես, նյութատարության էության, հանրային արտադրության արդյունավետության ցուցանիշների սիստեմում դրա դերի բնորոշմանը:

Չնայած արտադրանքի նյութատարության իջեցման պրոբլեմին նվիրված մեծ թվով աշխատությունների առկայությանը, տնտեսագետների կարծիքները էապես տարբերվում են նյութատարության գնահատման ու սահմանման հարցում: Նկատվում են այդ հասկացության անճշտություն կամ նույնիսկ շփոթում: Մինչև այժմ հստակ պատկերացում չկա նյութատարության ու նրա տարատեսակների ցուցանիշի տնտեսական նշանակության և ֆունկցիաների մասին:

Նյութատարության կատեգորիայի էությունը ճիշտ բնորոշելու համար ամենից առաջ անհրաժեշտ է ճշտել «նյութական ծախսումներ» հասկացության բովանդակությունը: Որոշ տնտեսագետներ այդ ասելով, աշխատանքի առարկաներից զատ հասկանում են նաև աշխատանքի օգտագործված միջոցների արժեքը: Մյուսները դրա մեջ ներառում են միայն աշխատանքի առարկաների ծախսերը: Ինչպես տեսնում ենք, տարբեր են այն չափանիշները, որոնցով ղեկավարվում են տնտեսագետների տարբեր խմբեր նյութական ծախսումների մեծությունը որոշելիս: Մեր կարծիքով, այստեղ անհրաժեշտ է ելնել ոչ միայն պատրաստի արդյունքի վրա արտադրամիջոցների արժեքի փոխանցման բնույթից, այլ նաև նյութական ծախսումների տնտեսական էությունից:

Նյութական ծախսումների տնտեսական էության վերլուծությունը «պահանջում է անպայման առանձնացնել և հատկապես ուսումնասիրել աշխատանքի առարկաների ու միջոցների ծախսումների դինամիկան» (Пешехонов Ю. В., Шаталин С. С., Отраслевая структура общественного производства. М., 1965, стр. 8), այսինքն՝ դրանք ուսումնասիրել բնաիրային բովանդակության առումով:

Նյութական ծախսումների սահմանման օրինաչափությունների հետազոտման գործում բնական ասպեկտի առանձնացումը պայմանավորվում է ժողովրդական տնտեսության մեջ նյութական ռեսուրսների և հիմնական ֆոնդերի վերարտադրության պրոցեսը պլանայնորեն կարգավորելու, ծախսումների և արդյունքների համաչափության վրա հիմնված արտադրության տնտեսական արդյունավետությունը որոշելու, ինչպես նաև տեխնոլոգիական տեսակետից փոխկապակցված արտադրությունների զարգացման հաշվեկշռվածությունն ապահովելու անհրաժեշտությամբ:

Չի կարելի համաձայնել այն տնտեսագետների հետ, որոնք նյութական ծախսումների արժեքի մեջ ներառում են ոչ միայն աշխատանքի առարկաները, այլև միջոցները (մաշումը): Ինչպես արտադրասպառման բնույթով, այնպես էլ արդյունքի ստեղծման գործում իրենց ունեցած դերով, աշխատաառարկաներն

Այսպիսով, անցյալ աշխատանքի խնայողությունը, նյութական ռեսուրս-
ների կորուստների նվազեցման շնորհիվ, անմիջականորեն ազդում է կենդանի
աշխատանքի խնայողության վրա։ Գերազանցապես կենդանի աշխատանքի
խնայողության կուրսը կարող է հանգեցնել արտադրության վրա կատարվող
հանրային աշխատանքի ամբողջական ծախսումների աճին և, վերջին հաշվով,
ժողովրդական տնտեսության աշխատանքային ռեսուրսների առավել մեծ պա-
կասի։ Զարգացած սոցիալիզմի էկոնոմիկայի հատկանիշն այն է, որ արտա-
դրության և նյութական ռեսուրսների վերամշակման տեմպերը ժողովրդական
տնտեսության մեջ էապես գերազանցում են կենդանի աշխատանքի աճի տեմ-
պերին։ Այսպես, 1940—1978 թթ. ժամանակամիջոցում էլեկտրաէներգիայի ար-
տադրությունը 24,7 անգամ, նավթինը՝ 18,3, պլաստմասսաներինը՝ 322, չու-
գունինը՝ 7,4, պողպատինը՝ 8,3 անգամ ավելանալու դեպքում արդյունաբե-
րության մեջ զբաղված բանվորների ու ծառայողների թվակազմն ավելացել է
ընդամենը 3,2 անգամ։

Չնայած այն բանին, որ անցյալ աշխատանքի խնայողությունն ազգային
եկամտի աճում այժմ առաջնակարգ նշանակություն է ստանում, մեր կարծի-
քով, հանրային աշխատանքի (իրայնացված կամ կենդանի) այս կամ այն ձևի
խնայողության կարևորության հարցի բուն դրվածքը, ինչպես նաև դրանց հա-
կադրումը սոցիալիստական էկոնոմիկայի առումով արդարացված չէ։

Նյութատարության հարցերի լուծումը ժողովրդատնտեսական պլաններում
սերտորեն առնչված է պլանի բոլոր ցուցանիշների հետ և մեծ դեր է խաղում
հասարակական արդյունքի վերարտադրության կարևորագույն համամասնու-
թյունների ապահովման գործում, մասնավորապես՝ հանրային արտադրության
I և II ստորաբաժանումների աճի տեմպերի հարաբերակցության մեջ։ Այժմ
դեռ մնում է այն միտումը, որ I ստորաբաժանման արտադրանքի տեսակարար
կշիռը հասարակական արդյունքում բարձրանում է, իսկ II ստորաբաժանմանը՝
իջնում։

Առաջին ստորաբաժանման ողջ արտադրանքը վաղ թե ուշ կդրսևորվի որ-
պես նյութական ծախսումներ։ Ուստի նյութական ծախսումների մակարդակն
ու աճի տեմպերը հիմնականում կանխորոշվում են I ստորաբաժանման աճի
տեմպերով, իսկ դա նշանակում է, որ արտադրամիջոցների մեկ միավորի փո-
խարեն կարելի է ստանալ արտադրանքի ավելի մեծ ֆիզիկական ծավալ։ Հետե-
վաբար, այն դրսևորվում է իբրև մի գործոն, որը մերձեցնում է հանրային ար-
տադրության երկու ստորաբաժանումների աճի տեմպերը։

Առաջին և երկրորդ ստորաբաժանումների ու արդյունաբերության «Ա» և
«Բ» խմբերի աճի տեմպերի մերձեցման համար հիմք են ծառայում այն վիթ-
խարի ռեզերվները, որոնք կան հանրային արտադրության I ստորաբաժանման
մեջ, որտեղ այժմ բարձր է նյութատարության մակարդակը։ Նյութատարության
կրճատումը նպաստում է II ստորաբաժանման աճի տեմպերի արագացմանը՝
արտադրական կուտակման համեմատաբար պակաս նորմայի դեպքում։ Սպառ-
ման առարկաների թողարկման (արդյունաբերության «Բ» խումբ) նյութական
տեսակարար ծախսումների պակասեցումը հանգեցնում է «Ա» խմբի համապա-
տասխան արտադրանքի անհրաժեշտ արտադրության կրճատման, արդյունա-
հանող ճյուղերի համեմատությամբ մշակող ճյուղերի աճի տեմպերի գերա-
զանցման։ Սակայն հարկավոր է նշել, որ նյութական ծախսումների և հանրա-
յին արդյունքի I և II ստորաբաժանումների միջև հարաբերակցությունների
փոփոխության նույնացումը, ինչպես այդ երբեմն արվում է, խիստ մոտավոր է։
Չնայած երկու ստորաբաժանումների հարաբերակցության վրա նյութատարու-
թյան մեծ ազդեցությանը, վերը նշված համամասնությունների փոփոխման
տեմպերը հաճախ չեն համընկնում։

Ժողովրդատնտեսական համամասնությունները, որոնք համապատասխա-
նում են արտադրուժերի զարգացման տվյալ մակարդակին, մեկ անգամ ընդ-
միշտ տրված չեն։ Շարունակ ձևավորվում են նոր մակարդակներ և հարաբե-
րակցություններ՝ նյութական ծախսումների հատուցման ֆոնդի և հանրային
արդյունքի, սպառման և կուտակման, ինչպես նաև առանձին ճյուղերի միջև,
որոնց գոյացման համար ակտիվ գործիք է նյութատարությունը։ Նյութատարու-



թյան դերը չափազանց մեծ է նաև արտադրության պահանջմունքների և եղած
ռեսուրսների հավասարակշռման գործում։

Այսպիսով, հանդիսանալով հանրային արտադրության արդյունավետու-
թյան հիմնական ցուցանիշներից մեկը և փոխադարձ սերտ կապի մեջ լինելով
դրանց հետ, նյութատարությունն էական ազդեցություն է ունենում նաև հան-
րային արտադրության I և II ստորաբաժանումների միջև ու դրանց ներսում
հարաբերակցություններ ստեղծելու վրա և, վերջին հաշվով, նպաստում է հա-
սարակական աշխատանքի (ժամանակի) խնայողությանը, ժամանակի խնա-
յողության՝ Կ. Մարքսի ձևակերպած դրույթի համաձայն։ «Ամեն մի խնա-
յողություն վերջին հաշվով հանգում է ժամանակի խնայողության... Ժա-
մանակի խնայողությունը, ինչպես և աշխատաժամանակի պլանաչափ
բաշխումը արտադրության տարբեր ճյուղերի միջև, մնում է առաջին տըն-
տեսական օրենքը կոլեկտիվ արտադրության հիման վրա։ Դա օրենք է դառ-
նում անհամեմատ ավելի բարձր աստիճանով» (К .Маркс и Ф. Энгельс.
Соч., т. 46, ч. I, стр. 117)։

Գործելով մարդկության ամբողջ պատմության ընթացքում, ժամանակի
խնայողության օրենքը տնտեսական տարբեր ֆորմացիաներում դրսևորվում է
տարբեր ձևերով. մինչկապիտալիստական ֆորմացիաներում դա հազիվ նշմար-
վող միտում է, կապիտալիստական հասարակարգում՝ արդեն բավական կայուն
և ակնառու, բայց ամենևին ոչ մշտական միտում։ Սոցիալիզմի օրոք դա կա-
րևորագույն տնտեսական օրենք է, որը ձեռք է բերում պլանաչափ ու կայուն
բնույթ և առավել լրիվ է գործում նրա բարձրագույն փուլում՝ կոմունիզմի ժա-
մանակ։

Սոցիալիզմի օրոք ժամանակի խնայողության օրենքն ունի ավելի կայուն
և համընդհանուր բնույթ, նրա գործողությունը ենթարկված է մարդկանց աճող
նյութական և հոգևոր պահանջմունքների առավել լրիվ բավարարման նպատա-
կին։ Մեր ողջ սոցիալիստական կենսաոճը բացառում է շռայլությունը, նյութա-
կան արժեքների, աշխատանքի, եռանդի անիմաստ վատնումը, որոնք տեղ ունեն
կապիտալիզմի պայմաններում։ Դա թելադրում է այդ արժեքները հաշվի առ-
նելու և դրանք ռացիոնալ կերպով ընդհանուր բարօրության համար օգտագոր-
ծելու անհրաժեշտությունը։

# ՍՈՑԻԱԼԻՍՏԱԿԱՆ ՄՐՑՈՒԹՅՈՒՆԸ՝ ԻՆՏԵՐՆԱՑԻՈՆԱԼ ԴԱՍՏԻԱՐԱԿՈՒԹՅԱՆ ԿԱՐԵՎՈՐ ԳՈՐԾՈՆ

Ա. Մ. ԱՌՈՒՍՏԱՄՅԱՆ

Մ ԵՐ ԵՐԿՐՈՒՄ ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ շինարարության արդի փուլը բնութագրվում է հասարակության տնտեսական, սոցիալական և հոգևոր կյանքի վերափոխումների բացառիկ բարձր տեմպերով և աննախընթաց մասշտաբներով։ Խնդիրների այս բարդ կոմպլեքսի լուծման գործում առաջնահերթ դեր է պատկանում արտադրական կոլեկտիվներին, որոնց անձնվեր աշխատանքով էլ վերջին հաշվով իրագործվում են կուսակցության պլանները։ Վ. Ի. Լենինը քանիցս նշել է աշխատավորական կոլեկտիվների հըս- կայական դերը, շեշտելով կուսակցության ամենօրյա աշխատանքի կարևոր նշանակությունը աշխատանքային կարգապահության ամրապնդման, մասսա- ների դաստիարակության, համաժողովրդական հաշվառման ու վերահսկողու- թյան, արտադրության պրոցեսում ընկերական նոր հարաբերությունների ար- մատավորման գործում։ Նա կոմունիստներին կոչ էր անում առավել ուշա- դրություն նվիրել ներգործարանային, ներգյուղական... կյանքի այն առօրյա կողմին, որտեղ ամենից շատ է ստեղծվում նորը, որտեղ ամենից ավելի է հարկավոր ուշադրություն, հրապարակայնություն, հասարակական քննադա- տություն, անպետքի խարազանում, լավից սովորելու կոչ (տե՛ս Երկեր, հ. 28, էջ 109)։

Միաձույլ, կայուն աշխատավորական կոլեկտիվն ունի դաստիարակչական վիթխարի ուժ։ Բուն աշխատավորական կոլեկտիվում է, որ մարդը ստանում է իսկական գաղափարաքաղաքական, բարոյական կոփվածք, հաղորդակից դառ- նում բանվոր դասակարգի փառապանծ ավանդույթներին, ձեռք բերում պա- տասխանատվության զգացում ընդհանուր գործի հաջողության համար։ Բան- վորական միասնության այդ զգացումը, հարազատ ձեռնարկությունում կա- տարվող մեծ գործերին մասնակից լինելու վեհ գիտակցությունը ծնում են հայ- րենասիրական նոր նախաձեռնություններ, որոնք ուղղված են հանրային աշխա- տանքի արտադրողականության բարձրացմանը, չօգտագործված ռեզերվների հայտնաբերմանը, և որոնք նպաստում են ժողովրդատնտեսական առաջադրանք- ների որակով ու ժամանակին կատարմանը։

Աշխատավորական կոլեկտիվում ձևավորվում և զարգանում է անհատի սո- ցիալիստական ազգային ինքնագիտակցությունը։ Նրա հասարակական կյանքը կազմակերպվում է բոլոր աշխատավորների շահերին համապատասխան, իսկ դա իր հերթին հանգեցնում է տարբեր ազգությունների մարդկանց մերձեց- ման։ Բուն աշխատավորական կոլեկտիվում է ազգային պատկանելության գի- տակցությունն առավել լիովին զուգակցվում ինտերնացիոնալ հանրությանը պատկանելու գիտակցության հետ, իսկ ազգային հպարտությունը դառնում է համաժողովրդական, իր կոլեկտիվի, քաղաքի, շրջանի, հանրապետության գոր- ծերի համար պատասխանատվության զգացումը վերաճում է իր ժողովրդի, ողջ



երկրի գործերի համար պատասխանատվության։ Այդ պրոցեսում մեծ դեր է խաղում սոցմրցությունը։ «Չկա մի գործարան, կոլտնտեսություն, կառույց, որոնց չդիպչեր դրա կենարար շունչը,— նշվեց ՍՄԿԿ XXVI համագումարում ՍՄԿԿ Կենտկոմի հաշվետու զեկուցման մեջ։— Մեծ է այդ հայրենասիրական շարժման թափը, որն այսօր ընդգրկել է ավելի քան հարյուր միլիոն մարդ։ Դրա մեջ ի հայտ են գալիս հասարակական պարտքի գիտակցման, աշխատանքային հերոսության ու անձնվիրության օրինակներ» (ՍՄԿԿ XXVI համագումարի նյութերը, էջ 93)։

Սոցիալիստական մրցությունը բնութագրելիս անհրաժեշտ է տարբերել նրա երկու հիմնական ֆունկցիաները՝ տնտեսական և սոցիալական։ Առաջինը կապված է անմիջականորեն հանրային արտադրության զարգացման պրոցեսում ծագող խնդիրների լուծման հետ և ուղղված է նյութատեխնիկական բազայի կատարելագործմանը, աշխատանքի արտադրողականության և արտադրության տնտեսական արդյունավետության բարձրացմանը։ Տվյալ ֆունկցիան եղել ու մնում է սոցիալիստական մրցության գլխավոր, որոշիչ ֆունկցիան։ Ոչ պակաս կարևոր է նաև մրցության երկրորդ՝ սոցիալական ու դաստիարակչական ֆունկցիան։ Այն աշխատավորների կոմունիստական դաստիարակության ներգործուն միջոց է։ Մեր հասարակության զարգացման փորձը ցույց է տալիս, որ մրցությունը նպաստում է սոցիալիստական դեմոկրատիայի, մարդկանց միջև փոխօգնության և համագործակցության հարաբերությունների ամրապնդմանն ու զարգացմանը, հայրենասիրության և ինտերնացիոնալիզմի վեհ զգացումի դաստիարակությանը, կոմունիստական գիտակցականության ձևավորմանը, մտավոր և ֆիզիկական աշխատանքի միջև եղած էական տարբերությունների հաղթահարմանը։

Կազմակերպել մրցությունը, սովորեցրել է Վ. Ի. Լենինը, նշանակում է նախ՝ «ապահովել հրապարակայնությունը», երկրորդ, ապահովել «արդյունքների համեմատելիությունը», երրորդ, ապահովել «փորձի պրակտիկ կրկնության հնարավորությունը» (տե՛ս Երկեր, հ. 27, էջ 245)։ Սոցմրցության կազմակերպման լենինյան այս սկզբունքներն այժմ էլ մրցության դաստիարակչական ֆունկցիայի հիմքն են։

Իր ամբողջ պատմության ընթացքում աշխատավորների սոցմրցությունը նպաստել է ՍՍՀՄ ժողովուրդների բարեկամության ամրապնդմանը։ Ներկա պայմաններում, զարգացած սոցիալիզմի ժամանակաշրջանում, մրցության այդ հատկությունը սկսել է դրսևորվել է՛լ ավելի ակնառու և ուժեղ։ Նախ, դա կապված է կոմունիզմի նյութատեխնիկական բազայի ստեղծման պրոցեսում մըրցության դերի աճի հետ, որը հանգեցնում է սովետական ժողովուրդների առավել սերտ համախմբմանը։ Երկրորդ, մրցությունը որոշակի ազդեցություն է ունենում ազգերի սոցիալական միատարրության խորացման և դրանով իսկ նրանց փոխադարձ վստահության ու բարեկամության հետագա ամրապնդման վրա։ Երրորդ, աճում է մրցության ներգործունությունը աշխատավորների կոմունիստական դաստիարակության վրա ընդհանրապես և նրանց ինտերնացիոնալ ու հայրենասիրական դաստիարակության վրա մասնավորապես։

Միութենական հանրապետությունների աշխատավորների միջև սոցիալիստական մրցության դաստիարակչական նշանակությունը դրսևորվում է ամենից առաջ մարդկանց վրա նրա ունեցած ներգործության, նրա մասսայականության, լավագույն փորձի փոխանակման ու յուրացման, տարբեր ազգերի ու ազգությունների ներկայացուցիչների շփման մեջ։ Մեծ նախաձեռնության կայծերից՝ առաջին կոմունիստական շաբաթօրյակներից, սոցիալիստական շինարարության հարվածայիններից և առաջին հնգամյակի հարվածային բրիգադներից, առաջին հանդիպական պլաններից է զարգացել մեր մրցությունը,— մատնանշվում է «ՍՍՀՄ ժողովրդական տնտեսության զարգացման առաջին հնգամյա պլանի 50-րդ տարեդարձի մասին» ՍՄԿԿ Կենտկոմի որոշման մեջ։— Այն հետագայում դրսևորվեց նախապատերազմյան հնգամյակների հերոսների՝ Ստախանովի և Բուսիգինի, Դեմչենկոյի և Կրիվոնոսի, Անգելինայի ու Վինոգրադովաների և աշխատանքային փառքի էստաֆետը նրանցից ընդունած ճաղա-

Տարիներ շարունակ «Հայէլեկտրալույս» արտադրամիավորումը սերտ կապեր է պահպանում Սարանսկի «Սվետոտեխնիկա» արտադրամիավորման հետ։ Երևանի ավտոգործարանի կոլեկտիվը մրցում է Ռիգայի և Լվովի ավտոշինարարների հետ։ Երևանի ավտոգործարանի արտադրական սերտ կապերի մասին է վկայում նաև այն փաստը, որ երկրի մոտ 150 ձեռնարկություններ մինչև 1500 ավտոմասեր են առաքում գործարանին։

Աշխատավորների ինտերնացիոնալ բարեկամության ամրապնդման գործում բարերար դեր է կատարում Լենինականի ավանդական սոցմրցությունը Քութայիս և Կիրովաբադ քաղաքների հետ։ Մրցությունն ունի ակտիվ ու բազմակողմանի բնույթ։ Մրցության նախաձեռնողը Լենինականի Մայիսյան ապստամբության անվան տեքստիլ կոմբինատի կուսկազմակերպությունն է։

Ինտերնացիոնալ սոցմրցությունը կազմակերպված է ո՛չ միայն տարբեր հանրապետությունների քաղաքների, այլև առանձին շրջանների միջև։ Օրինակ, Հայկական ՍՍՀ Գուգարքի շրջանը տարիներ շարունակ մրցում է Կրասնոդարի երկրամասի Կուշչովսկի շրջանի, ինչպես նաև մեր հանրապետության Սևանի ու Թալինի շրջանների հետ։ Արդեն ավանդույթ է դարձել հանրապետության Կրասնոսելսկի շրջանի աշխատավորների մրցությունը Ուկրաինական ՍՍՀ Վորոշիլովգրադի մարզի Բելովոդսկի շրջանի, Ադրբեջանական ՍՍՀ Գետաբեկի շրջանի և Հայկական ՍՍՀ Գուգարքի շրջանի աշխատավորների հետ։ Սպիտակի շրջանը մրցում է Ստավրոպոլի երկրամասի Կուրգանի շրջանի հետ, Մեղրունը՝ Ադրբեջանական ՍՍՀ Օրդուբադի, Իջևանինը՝ Ադրբեջանական ՍՍՀ Ղազախի և Աբխազական ԻՍՍՀ Օչամչիրայի շրջանների հետ և այլն։ Հայաստանի կոմկուսի XXVII համագումարը, ամփոփելով տասներորդ հնգամյակի արդյունքները, գոհունակությամբ նշեց սոցմրցության վիթխարի դերը նոր, ավելի բարձր բնագծեր նվաճելու և քաղաքի ու գյուղի աշխատավորների աշխատանքային ու քաղաքական ակտիվությունն է՛լ ավելի բարձրացնելու գործում։ «Հանրապետության կուսակցական կազմակերպության քաղաքական ու կազմակերպական նպատակասլաց գործունեությունը,— նշվեց համագումարում,— հերոսական բանվոր դասակարգի, կոլտնտեսային պանծալի գյուղացիության, ժողովրդական մտավորականության, բոլոր աշխատավորների հայրենասիրական ոգեշունչ աշխատանքը հիանալի արդյունքներ տվեցին... Տասներորդ հնգամյակը դարձավ մեծ նվաճումների հնգամյակ կենսագործունեության բոլոր ոլորտներում»։

Զարգացած սոցիալիզմի պայմաններում սոցմրցությունը դարձել է համաժողովրդական շարժում։ Այն ամրապնդում է զանազան ազգությունների աշխատավորների ինտերնացիոնալ կապերը, փոխըմբռնումն ու փոխադարձ վըստահությունը, նպաստում է արտադրական փորձի և գիտատեխնիկական նվաճումների ավելի արագ տարածմանը։ Այսօր ամեն մի ձեռնարկության հաջողությունը ողջ երկրի տասնյակ ու հարյուրավոր աշխատավորական կոլեկտիվների գործունեության, ստեղծագործական ջանքերի արդյունքն է։

Մասսայական սոցմրցության մեջ վառ կերպով դրսևորվում են սոցիալիստական ազատագրված աշխատանքն ու նոր վերաբերմունքը դրա նկատմամբ, միլիոնավոր աշխատավորների սոցիալական և քաղաքական ակտիվությունն ու ստեղծագործական նախաձեռնությունը, նրանց հայրենասիրությունը գործողության մեջ։ «Սոցիալիստական մրցությունը մասսաների կենդանի ստեղծագործությունն է, սովետական մարդկանց բարձր գիտակցականության ու նախաձեռնության վրա հիմնված հայրենասիրական շարժում, աշխատավորներին կոմունիստական շինարարության պլանների կենսագործմանը մոբիլիզացնող հուժկու միջոց»— մատնանշվում է «Տասնմեկերորդ հնգամյակի առաջադրանքները հաջողությամբ կատարելու և գերակատարելու համամիութենական սոցիալիստական մրցության մասին» ՍՄԿԿ Կենտկոմի, ՍՍՀՄ Մինիստրների խորհրդի, ՀԱՄԿԽ-ի և ՀամԼԿԵՄ Կենտկոմի որոշման մեջ։

Միահամուռ կերպով պաշտպանելով կուսակցության պլանները, հանրապետության քաղաքների և գյուղերի աշխատավորները ակտիվորեն ձեռնամուխ են եղել ՍՄԿԿ XXVI համագումարի որոշումների և տասնմեկերորդ հնգամյակի պլանների կատարման գործին։

---

# ԻՆԺԵՆԵՐԱՏԵԽՆԻԿԱԿԱՆ ԿԱԴՐԵՐԻ ՔԱՂԱՔԱԿԱՆ ԱԿՏԻՎՈՒԹՅՈՒՆԸ

**Վ. Հ. ԱԼԱՎԵՐԴՅԱՆ**
«Հայէլեկտրմեքենա» արտադրամիավորման քաղլուսկաբինետի վարիչ

«ՀԱՅԷԼԵԿՏՐԱՄԵՔԵՆԱ» ԱՐՏԱԴՐԱՄԻԱՎՈՐՄԱՆ Երևանի Վ. Ի. Լենինի անվան էլեկտրամեքենաշինական գործարանը ՍՍՀՄ էլեկտրատեխնիկական արդյունաբերության առաջատար և առաջավոր ձեռնարկություններից է։ Ամեն օր նրա դարբասներից դուրս է գալիս ավելի քան 50 վագոն արտադրանք, որը, երկրի հազարավոր պատվիրատուներից բացի, առաքվում է նաև արտասահմանյան 70 երկիր։ Ձեռնարկությունն այսօր թողարկում է շուրջ 400 տիպի արտադրատեսակ։ Հետզհետե ավելի ու ավելի են վերազինվում արտադրամասերը, աճում է արտադրանքի ծավալը, ընդլայնվում տեսականին։

Նոր հնգամյակում էլեկտրամեքենաշինարարների առջև ծառացած են մեծ մասշտաբի խնդիրներ, որոնց իրականացումը կոլեկտիվից պահանջում է հսկայական ջանքեր, ուժերի առավելագույն լարում։ Այս առնչությամբ մեծ պահանջներ են առաջադրվում ինժեներատեխնիկական անձնակազմին։ Նա է այն ուժը, որը կոչված է արագացնելու գիտատեխնիկական առաջընթացը, արտադրության կազմակերպումը հասցնելու ավելի բարձր մակարդակի, անմիջականորեն զբաղվելու կոլեկտիվի անդամների դաստիարակությամբ։

«Հայէլեկտրամեքենա» արտադրամիավորման կուսկոմիտեն և սկզբնական կազմակերպությունների բյուրոները սիստեմատիկ, պլանավորված կերպով զբաղվում են ինժեներատեխնիկական աշխատողների արտադրական ու հասարակական ակտիվության բարձրացման հարցերով։ Նրանք առանձնապես լուրջ ուշադրություն են նվիրում մասնագետ կադրերի մարքս-լենինյան աշխարհայացքի կերպավորմանը, քաջ գիտակցելով, որ դրանք ակտիվության աճի կարևոր գործոններ են։ Տեսական սեմինարներում, մարքսիզմ-լենինիզմի հիմունքների դպրոցներում, ժողովրդական համալսարաններում ինժեներ կադրերը խոր գիտելիքներ են ձեռք բերում ՍՄԿԿ պատմության, մարքս-լենինյան փիլիսոփայության, գիտական կոմունիզմի վերաբերյալ։ Միայն անցած ուսումնական տարում ուսուցման տարբեր օղակներում ընդգրկված էին 1.245 ինժեներատեխնիկական աշխատողներ։ Դրա հետ մեկտեղ շատ մասնագետներ քաղաքական ինքնակրթությամբ զբաղվում են անհատական պլանով, ինքնուրույն կերպով ուսումնասիրում մարքսիզմ-լենինիզմի հիմնադիրների աշխատությունները, կոմունիստական շինարարության տեսության ու պրակտիկայի հրատապ պրոբլեմները։

Ինժեներատեխնիկական կադրերի գաղափարական կոփման գործն ամուր հիմքերի վրա է դրված հատկապես էլեկտրամեքենաշինության, ավտոմատացման և մեքենայացման գլխավոր կոնստրուկտորների և գլխավոր տեխնոլոգի բաժիններում։ Այդ կազմակերպություններում տեխնիկական բոլոր մասնագետներն ուսուցման տարբեր օղակների ունկնդիրներ են, սիստեմատիկաբար բարձրացնում են իրենց գաղափարաքաղաքական մակարդակը։ Այսպես, գլխավոր տեխնոլոգի բաժնում աշխատում են շուրջ 160 ինժեներներ ու տեխնիկ-

ներ: Նրանք համապատասխանաբար, ըստ կուսակցականության ու կրթական մակարդակի, իրենց քաղաքական գիտելիքներն են հարստացնում յոթ տարբեր խմբերում: Բաժնի կուսկազմակերպության տեսական սեմինարում ընդգրկված են 26 ինժեներ-կոմունիստներ: Շուրջ քսան տարի այդ սեմինարը ղեկավարում է գլխավոր տեխնոլոգի տեղակալ Վ. Ներսիսյանը, որը պրոպագանդիստական բարեխիղճ աշխատանքի համար արժանացել է Հայկական ՍՍՀ Գերագույն սովետի պատվոգրի: Պարապմունքի ընթացքում այստեղ հաճախ են ծագում հրատապ լուծում պահանջող սկզբունքային հարցեր, ծավալվում բանավեճեր: Ինժեներ ունկնդիրները դրսևորում են մեծ ակտիվություն, հանդես գալիս ռեֆերատներով, քննարկվող հարցի շուրջ հայտնում իրենց կարծիքը, պատրաստ են լուծելու արծարծված խնդիրները: Ունկնդիրներից Օ. Կարապետյանը, Վ. Սուքիասյանը, Ռ. Ղազարյանը նախորդ ուսումնական տարիներին կարդացել են մի շարք հաջողված ռեֆերատներ, արել բազմաթիվ առաջարկություններ, որոնք ներդրվել են արտադրության մեջ՝ գործարանին բերելով հարյուր հազարավոր ռուբլիների տնտեսական օգուտ: Սեմինարի բոլոր ունկնդիրները պատասխանատվությամբ են կատարում նաև կուսակցական ու հասարակական տարբեր հանձնարարություններ: Այսպես, ունկնդիր Մ. Քոչարյանը բաժնի կուսբյուրոյի քարտուղարն է, Հ. Ասատրյանը՝ քաղինֆորմատոր, Մ. Ենգիբարյանը՝ երիտասարդ կոմունիստների դպրոցի ղեկավար, Լ. Ունջյանը, Ա. Ասատրյանը, Լ. Ջենոյանը պարբերաբար լույս են ընծայում «Տեխնոլոգ» պատի թերթը: Ունկնդիրներից շատերն ունեն անձնական ստեղծագործական պլան, մրցում են «լավագույն տեխնոլոգ», «լավագույն ինժեներ», «լավագույն ռացիոնալիզատոր» կոչումների համար: Վերջերս, երբ ամփոփվեցին անցած հնգամյակում հայտարարված մրցույթի արդյունքները, «Միավորման վաստակավոր ռացիոնալիզատոր» պատվավոր կոչում շնորհվեցին սեմինարի նախկին ունկնդիր Ռ. Ղազարյանին (նա այժմ պրոպագանդիստ է) և սեմինարավար Վ. Ներսիսյանին:

Կուսկոմիտեն մշտապես հոգ է տանում, որպեսզի ինժեներատեխնիկական կադրերի ուսուցումը բոլոր օղակներում լինի կոնկրետ, գործնական ու գիտական դիրքերից արտացոլի հասունացած առօրյա պրոբլեմները, նպաստի արտադրության տեխնիկական առաջընթացին: Դա շատ կարևոր գործ է, քանի որ ժամանակակից արդյունաբերական ձեռնարկության տնտեսական գործունեության բարդացումը, մասնագիտական կառավարման անհրաժեշտությունն ինժեներական կադրերից պահանջում են խոր ու բազմակողմանի տնտեսագիտական գիտելիքներ:

Գիտատեխնիկական հեղափոխության արդի ժամանակաշրջանում կուսկոմիտեն և կուսբյուրոները, ինժեներատեխնիկական կադրերի քաղաքական դաստիարակության հետ մեկտեղ, կարևոր ուշադրություն են նվիրում նաև նրանց տնտեսագիտական ուսուցմանը: Այսպես, 1980—81 ուստարում գործող 104 տնտեսագիտական դպրոցներից 24-ը կոմպլեկտավորված էին միայն ինժեներներով: Նրանք ուսումնասիրում էին «Ղեկավարի աշխատանքը», «Արտադրության և էկոնոմիկայի կառավարման հիմունքները», «Տնտեսական մեխանիզմի կատարելագործումը», «Ինժեներական աշխատանքը սոցիալիստական հասարակարգում» դասընթացները: Տնտեսագիտական ուսուցման արդյունավետ կազմակերպման շնորհիվ գործարանի ինժեներատեխնիկական անձնակազմը հարստացնում է իր գիտելիքները, որոնք էապես նպաստում են արտադրության հստակ կազմակերպմանը և գիտատեխնիկական առաջընթացի արագացման խնդիրների ճիշտ լուծմանը:

Կյանքը, մարդկանց պրակտիկ գործունեությունը պահանջում են օրգանապես զուգակցել տնտեսական և դաստիարակչական աշխատանքները: Միայն քաղաքական ուսուցման և տնտեսագիտական կրթության համակարգում պրոպագանդիստի պատվավոր պարտականություն են կատարում ղեկավար և ինժեներատեխնիկական 435 աշխատողներ: Էլեկտրամեքենաշինության գլխավոր կոնստրուկտոր Ս. Սարգսյանը, գործիքաշինական արտադրամասի տեխբյուրոյի պետ Մ. Գյուլնազարյանը, տրանսֆորմատորաշինության գլխավոր



կոնստրուկտոր Ս. Թեփելիկյանը, գլխավոր մետաղագետ, տեխնիկական գիտությունների թեկնածու Ա. Խաչատրյանը և ուրիշներ ոչ միայն ճանաչված մասնագետներ, արտադրության լավագույն կազմակերպիչներ են, այլև կոլեկտիվի բանիմաց ղեկավարներ, քաղաքական փորձառու դաստիարակներ, հմուտ պրոպագանդիստներ:

Ղեկավարվելով տնտեսական ու դաստիարակչական աշխատանքի օրգանական կապի անհրաժեշտության մասին կուսակցության ցուցումներով՝ կուսկոմիտեն անցած ժամանակաշրջանում զգալի գործ է արել կոլեկտիվում բարոյահոգեբանական մթնոլորտի լավացման, նրա անդամների գաղափարական դաստիարակության բարելավման համար, այդ գործում բարձրացրել ինժեներատեխնիկական կադրերի դերն ու պատասխանատվությունը: Այսօր ինժեներատեխնիկական կադրերը հմտորեն են զուգակցում դաստիարակչական աշխատանքը իրենց արտադրական, վարչատնտեսական պարտականությունների կատարման հետ, ակտիվորեն մասնակցում են կուսակցական ու հասարակական կազմակերպությունների գործունեությանը. 200-ից ավելի ինժեներատեխնիկական աշխատողներ կուսակցական ու արհմիութենական կոմիտեների անդամներ են, սկզբնական կուսակցական ու կոմերիտական կազմակերպությունների քարտուղարներ, կուսխմբերի ղեկավարներ, արհմիութենական տեղկոմների նախագահներ: Գործարանի յուրաքանչյուր երկրորդ ինժեներատեխնիկական աշխատողը ՍՄԿԿ անդամ է: Այսպիսով, չկա հասարակական կյանքի մի ոլորտ, որտեղ ինժեներ-մասնագետները ներգրավված չլինեն: Այս ամենը կոլեկտիվում նրանց դերի ու հեղինակության աճի վկայությունն է:

Նոր հնգամյակում ինժեներատեխնիկական կադրերի առջև խնդիր է դրված՝ արագացնել բարձրարտադրողական այնպիսի մեքենաների ստեղծումն ու յուրացումը, որոնք կնպաստեն հումքային ռեսուրսների առավելագույն խնայողությանը: Վերջերս Մ. Մարտոյանի նախաձեռնությամբ բաժնի կոմունիստները իրենց հերթական ժողովում քննարկեցին այդ հարցը: Մտածեցին՝ ինչպե՞ս անել, որ էլեկտրամեքենաների արտադրության պրոցեսն ընթանա մետաղի քիչ ծախսումով, իջնի նյութատարությունը: Եղան զանազան առաջարկություններ, հայտնվեցին տարբեր նկատառումներ: Եվ հենց ժողովում էլ մշակեցին միջոցառումներ, որոնց իրականացումը հնարավորություն կտա տարեկան տնտեսելու 300 տոննա մետաղ: Միջոցառման այդ պլանն արժանացավ կուսկոմիտեի հավանությանը: Մարտոյանի աշխատանքային պրակտիկայից նման օրինակներ կարելի է շատ բերել: Ինժեներ կոմունիստը, կոլեկտիվի քաղաքական ղեկավարը միշտ հանդես է գալիս որպես նորի, առաջավորի նախաձեռնող ու պաշտպան: Նրա ռացիոնալիզատորական առաջարկներից 26-ը ներդրվել է արտադրության մեջ և գործարանին տվել 37 հազար ռուբլու տնտեսական օգուտ: Վերջերս Մ. Մարտոյանը նույնպես արժանացավ արտադրամիավորման լավագույն ռացիոնալիզատորի կոչման:

Կուսկազմակերպության քարտուղարի գործունեությունն իրենց հիմնական աշխատանքային պարտականության կատարման հետ խելացիորեն են զուգակցում նաև ինժեներներ Մ. Նուրիջանյանը, Գ. Մանուչարյանը, Կ. Միրզոյանը և ուրիշներ:

Ապահովելով կազմակերպչական և դաստիարակչական աշխատանքի միասնությունը՝ կուսկոմիտեն ամեն ինչ անում է, որպեսզի ինժեներ-քաղինֆորմատորները պարբերաբար հանդես գան կոլեկտիվի առջև, պրոպագանդեն կուսակցության և կառավարության որոշումները, խորությամբ պարզաբանեն տասնմեկերորդ հնգամյակում լուծվելիք տնտեսական ու սոցիալական պրոբլեմների էությունը, ձեռնարկության կոլեկտիվի առջև ծառացած խնդիրները:

Միջին օղակի մասնագետ կադրերից 115-ը ներգրավված են քաղաքական աշխատանքում՝ որպես ագիտատորներ: Կենսագործելով քաղաքական բանավոր ագիտացիայի դերի բարձրացման մասին ՍՄԿԿ Կենտկոմի որոշումը՝ կուսկոմիտեն և արտադրամասային կուսբյուրոներն զգալիորեն բարելավել են ագիտատորների որակական կազմը ի հաշիվ արտադրության մասնագետների:

Ինժեներատեխնիկական աշխատողները կատարում են նաև հասարակա-

կան այլ հանձնարարություններ։ Նրանցից 57-ը տեղական բազմատպաքանակ թերթի, ռադիոյի և պատի թերթերի խմբկոլների անդամներ են, հանդես են գալիս կարևոր հոդվածներով, հումքի, աշխատանքային ռեսուրսների ռացիոնալ ու խնայողական օգտագործմանը նվիրված արժեքավոր առաջարկություններով։

Դասախոսական պրոպագանդան գաղափարախոսական աշխատանքի կարևոր օղակն է։ Գործարանի տեխնիկական մտավորականությունն ակտիվորեն մասնակցում է նաև այդ գործին։ Աշխատավորության համար կարդացվող դասախոսությունների կեսից ավելին կազմակերպվում է նրա ուժերով։

Էլեկտրամեքենաշինարարների գաղափարաքաղաքական դաստիարակության գործին ղեկավար և ինժեներատեխնիկական կադրերի մասնակցության լավագույն ձև է միասնական քաղօրվա անցկացումը։ Արտադրամասերի ու բաժինների պետեր է. Սաֆարյանը, Վ. Ազատյանը, Ռ. Մանուկյանը, Կ. Յանիկյանը, արտադրության մյուս հրամանատարներն անկաշկանդ մթնոլորտում հաղորդում են կոլեկտիվի անդամներին արտադրության գործերի ընթացիկ իրավիճակի ու հեռանկարային խնդիրների, նրանց աշխատանքի, հանգստի ու կենցաղի կազմակերպման մասին, սիրով պատասխանում աշխատավորներին հուզող հարցերին։ Միասնական քաղօրվա անցկացումը նպաստում է ղեկավար և ինժեներատեխնիկական կադրերի ակտիվության բարձրացմանը, կոլեկտիվի անդամների տրամադրության լավացմանը, նրանց համախմբվածության ամրապնդմանը։

Ինժեներատեխնիկական կադրերն ակտիվորեն մասնակցում են նաև կոլեկտիվում գեղարվեստական ինքնագործունեության զարգացման, սպորտային միջոցառումների, կուլտուրական ժամանցների կազմակերպման գործին։ Տրանսֆորմատորաշինության գլխավոր կոնստրուկտորի տեղակալ, տեխնիկական գիտությունների թեկնածու Յու. Հովհաննիսյանը, որը շուրջ տասի հասնող գիտական աշխատությունների հեղինակ է, ժամանակ է գտնում ակտիվորեն լծվելու նաև կոլեկտիվի հասարակական կյանքին։ Նա գործարանի արվեստի և գրականության ժողովրդական համալսարանի ռեկտորն է։ Համալսարանի յուրաքանչյուր հերթական պարապմունք կուլտուրական բնույթի խոշոր միջոցառում է դառնում կոլեկտիվի համար։ Նրա նախաձեռնությամբ էլեկտրամեքենաշինարարները հաճախ են հանդիպումներ ունենում արվեստի ու կուլտուրայի ականավոր գործիչների հետ, էքսկուրսիաներ ու հետաքրքրական պարապմունքներ անցկացնում թանգարաններում, շփվում արվեստի աշխարհի հետ։ Նրա ջանքերի շնորհիվ ժողհամալսարանն արժանացել է Հայկական ՍՍՀ կուլտուրայի մինիստրության պատվոգրին։ Բարձր կուլտուրայի տեր, չափազանց աշխատասեր մարդ է Յու. Հովհաննիսյանը, և միայն համալսարանով չի սպառվում նրա հասարակական գործունեությունը։ Այսպիսին են միավորման կուսկազմակերպության աճեցրած ինժեներատեխնիկական կադրերը։

Կուսկոմիտեն, տնտեսական ղեկավարությունը առանձնահատուկ ուշադրություն են նվիրում բանվորների և ինժեներատեխնիկական աշխատողների ստեղծագործական համագործակցությանը, խրախուսում այն։ Ձեռնարկության ինժեներներն օգնում են բանվորներին տեխնիկական առաջարկությունների մշակման, ձևակերպման, նոր տեխնիկայի ներդրման ու յուրացման գործում։ Նրանք համատեղ առաջարկություններ են անում աշխատանքի և արտադրության կազմակերպման կատարելագործման, ներքին ռեզերվների որոնման ու հայտնաբերման, խնայողության ռեժիմի ուժեղացման նպատակով։ Անցած հնգամյակում գյուտարարական ու ռացիոնալիզատորական շարժմանը մասնակցել են 1800 բանվորներ և ինժեներատեխնիկական աշխատողներ, որոնք միասին արտադրության մեջ ներդրել են 1378 ռացիոնալիզատորական առաջարկություն, 8 գյուտ։ Դրանց արմատավորման շնորհիվ տնտեսական օգուտը կազմել է 4,5 միլիոն ռուբլի, խնայվել է 1880 տոննա սև և 74 տոննա գունավոր մետաղ։ Գործարանի ինժեներատեխնիկական աշխատողները բանվորների հետ համատեղ լուծում են արտադրական և հասարակական կյանքի հարցեր, ակտիվորեն մասնակցում սոցիալիստական պարտավորությունների, կոլեկտիվի սոցիալական զարգացման պլանի մշակմանը։



Կուսակցական և հասարակական կազմակերպությունների գործունեությանը ցույց տրվող ակտիվ մասնակցությունը մի կողմից օգնում է տեխնիկական մտավորականությանը՝ գիտակցելու իր աշխատանքի հասարակական արժույթը, ձեռք բերելու տնտեսական խնդիրները լուծելու հմտություն։ Մյուս կողմից դա հնարավորություն է ընձեռում միավորման կուսակցական կազմակերպությանը, տնտեսական ղեկավարությանը՝ օգտագործելու ինժեներատեխնիկական կադրերի փորձն ու գիտելիքները, դրանք ծառայեցնելու զարգացած սոցիալ-տնտեսական պրոբլեմների ճիշտ լուծմանը։

Մասնագետ կադրերի նկատմամբ կուսակցական կազմակերպության ցուցաբերած հոգատարությունը հանգեցրել է տեխնիկական մտավորականության ինչպես քանակական, այնպես էլ որակական աճին։ Անցած հնգամյակում զգալիորեն աճել է մասնագետների, այդ թվում՝ դիպլոմավոր ինժեներների թիվը։ Նրանցից հինգը պաշտպանել են թեկնածուական դիսերտացիա, մեկն զբաղված է դոկտորական, չորսը՝ թեկնածուական դիսերտացիաներով, ևս չորսը հեռակայում են ասպիրանտուրայում։ Մասնագետների կրթական ու կուլտուրական մակարդակի բարձրացումը հնարավորություն է ընձեռել բարելավելու ղեկավար կադրերի որակական կազմը, արտադրության կարևոր տեղամասերն ապահովելու քաղաքականապես հասուն, եռանդուն մասնագետներով։

Գաղափարաքաղաքական դաստիարակության գործին ղեկավար կադրերի և ինժեներատեխնիկական անձնակազմի ակտիվ մասնակցությունն ամրապնդում է նրանց սերտ կապը կոլեկտիվի շարքային անդամների հետ, մոբիլիզացնում բոլոր ուժերը առաջադրված խնդիրների կատարման համար։ Միավորման գլխավոր դիրեկտոր, Սոցիալիստական աշխատանքի հերոս Ռ. Պ. Ամիրյանն ակտիվորեն մասնակցում է կոլեկտիվի շրջանում տարվող գաղափարադաստիարակչական աշխատանքներին։ Նա կուսկոմիտեի դասախոսական խմբի անդամ է և հաճախ է հանդես գալիս կուսակցության ու կառավարության որոշումներին, կոլեկտիվի առջև ծառացած սոցիալ-տնտեսական խնդիրներին վերաբերող զեկուցումներով։

Այսօրվա պահանջների մակարդակին համապատասխանող ղեկավարն ըստեղծագործական մթնոլորտ է ստեղծում կոլեկտիվում, հանդես բերում ակտիվություն ու նախաձեռնություն, օրինակ ծառայում ենթակաների համար։ Իսկ նման ղեկավարներ, որոնք շարքային ինժեներից աճել, դարձել են արտադրամասերի ու բաժինների պետեր, շատ կան՝ Ս. Սարգսյանը, Ֆ. Խաչատրյանը, Բ. Շարոյանը, Կ. Ներսիսյանը և ուրիշներ։ Շուրջ քառորդ դար գործարանում է աշխատում խոշոր էլեկտրական մեքենաների արտադրության պետ Մ. Սարուխանյանը։ Արտադրության հմուտ կազմակերպիչ, զգայուն ու սրտաբաց, հասարակական ակտիվ աշխատող, ընտանիքի լավ հայր— այդպիսին գիտեն նրան կոլեկտիվում։ Նա կատարել է տարբեր պարտականություններ, ղեկավարել փոքր ու մեծ կոլեկտիվներ և ամենուրեք մեծ ուշադրություն է նվիրել դաստիարակչական աշխատանքին, աջակցել իր կոլեկտիվում բարոյահոգեբանական մթնոլորտի բարելավմանը, աշխատանքային կարգապահության, կազմակերպվածության, կարգ ու կանոնի ամրապնդմանը։

Կուսկոմիտեի, սկզբնական կուսկազմակերպությունների բյուրոների նիստերում հաճախ են լսվում ինժեներատեխնիկական աշխատողների հաշվետվությունները՝ կապված նրանց հասարակական գործունեության արդյունավետության բարձրացման հետ։ Այսպես, վերջերս կուսկոմիտեն քննարկել է տեխնիկական ուսուցման բաժնի պետ Ն. Եղիկյանի հաշվետվությունը ինժեներատեխնիկական կադրերի պատրաստման ու որակավորման բարձրացման նպատակով տարվող աշխատանքի դրվածքի և առանձին կոմունիստ-ինժեներների հաղորդումները տարբեր ասպարեզներում իրենց ծավալած գործունեության մասին։ Այդ կարգի հարցեր են քննարկվել նաև գլխամասային գործարանի խոշոր արտադրությունների կուսժողովներում։ Պրակտիկա է դարձել նաև երիտասարդ կոմունիստ մասնագետների ինֆորմացիայի ունկնդրումը։

Միավորման գլխամասային գործարանի տեխնիկական մտավորականության հասարակական-քաղաքական ակտիվության աճի և կոլեկտիվի անդամների դաստիարակությանը նրանց մասնակցության գործում դեռևս քիչ չեն

թերությունները, չլուծված հարցերը: Ոչ բոլոր կադրերն են ակտիվորեն մասնակցում կոլեկտիվի հասարակական կյանքին, քաղաքական-դաստիարակչական աշխատանքներին: Կուսկոմիտեն, ինչ խոսք, անհանդուրժողաբար է վերաբերվում այդպիսիների նկատմամբ: Դրա հետ մեկտեղ, հարկ է նշել, որ գործարան եկող դիպլոմավոր երիտասարդների զգալի մասը, լավ մասնագետ լինելով հանդերձ, միշտ չէ, որ տիրապետում է դասախոսություն, զեկուցում կարդալու, քաղաքական ագիտացիա կամ պարապմունք վարելու մեթոդիկային, դաստիարակության արվեստին: Ցավոք, նրանցից ոմանք բուհերում ու տեխնիկումներում չեն ստանում այդպիսի համապատասխան պատրաստություն: Նկատի ունենալով այդ հանգամանքը՝ կուսկոմիտեն տեղում համապատասխան աշխատանք է տանում նրանց հետ, պարբերաբար հրավիրում սեմինարներ, գիտատեսական կոնֆերանսներ, որտեղ արծարծվում են արտադրության կառավարման և մարդկանց դաստիարակության հետ առնչվող կարևոր ու հրատապ հարցեր: Կոմիտեին առընթեր մշտական գործող պրոպագանդիստական դպրոցներում ևս ինժեներատեխնիկական աշխատողները ծանոթանում են մանկավարժության ու հոգեբանության հիմունքներին, տիրապետում կուսակցական պրոպագանդայի արվեստին: Հետաքրքրական դասախոսություններով հանդես են եկել մեզ մոտ հանրապետության ճանաչված մի շարք գիտնականներն ու դասախոսները:

Գաղափարախոսական աշխատանքի բարելավման և այդ ոլորտում ինժեներատեխնիկական կադրերի լայն ընդգրկման շնորհիվ էապես բարձրացել է կոլեկտիվի անդամների աշխատանքային ու հասարակական ակտիվությունը, որն արտացոլվել է արտադրական հաջողություններում: Անցած հինգ տարիները բեղմնավոր եղան միավորման և նրա գլխամասային ձեռնարկության կոլեկտիվի համար: Հաջողությամբ կատարվեցին արտադրանքի իրացման պետական պլաններն ու սոցպարտավորությունները: Մեծ են հասումները նաև ընթացիկ տարվա առաջին կիսամյակում: Թողարկվել է 1,2 միլիոն ռուբլու գերպլանային արտադրանք: Զգալիորեն գերակատարվել է նաև իրացման պլանը: Յուրացվել է նոր տիպի էլեկտրամեքենաների արտադրությունը, մշակվել տրանսֆորմատորների ու այլ արտադրատեսակների նոր նմուշներ:

Սակայն կուսկոմիտեն և գործարանի ղեկավարությունը չեն սահմանափակվում ձեռք բերածով և հետևողական աշխատանք են տանում ինժեներատեխնիկական կադրերի որակակա՛ն կազմի հետագա բարելավման, նրանց ստեղծագործական աճի, նախաձեռնության զարգացման, հասարակական-քաղաքական ակտիվության բարձրացման նպատակով: Կոմիտեն, սկզբնական կազմակերպությունները մշտապես որոնում ու գործադրում են ինժեներատեխնիկական կադրերի հետ տարվող աշխատանքի արդյունավետ ձևեր ու միջոցներ: Նրանց համար գործողության ուղեցույց է ՍՄԿԿ XXVI համագումարի այն կարևոր պահանջը, որ այսօրվա մասնագետը, ժողովրդական տնտեսության որ բնագավառում էլ աշխատելիս լինի, պետք է ունենա լայն մտահորիզոն, քաղաքական խոր գիտելիքներ, գաղափարական ամուր կոփվածք:

Ղեկավարվելով ՍՄԿԿ XXVI և ՀԿԿ XXVII համագումարների որոշումներով՝ էլեկտրամեքենաշինարարների բազմահազարանոց կոլեկտիվն ամեն ինչ անում է նոր հնգամյակում իր կանխորոշած տնտեսական և սոցիալական խնդիրները հաջողությամբ լուծելու համար: Այդ գործում իր արժանի ավանդն է ներդնում նաև շուրջ երկու հազարի հասնող ինժեներատեխնիկական մտավորականության ջոկատը:

---

# ԱՐԺԱՆԻ ՀԵՐԹԱՓՈԽԻ ՀԱՄԱՐ

**Ռ. Գ. ՀԱԿՈԲՅԱՆ**
Լենինականի բամբակագործվածքային արտադրամիավորման «Տեքստիլագործ» թերթի խմբագիր

ՅՈԹ ՏԱՐԻ Է ԱՆՑԵԼ ԱՅՆ ՕՐՎԱՆԻՑ, ինչ Լենինականի Մայիսյան ապստամբության անվան բամբակագործվածքային արտադրամիավորումում սկսեց լայնորեն ծավալվել վարպետ-դաստիարակների շարժումը: Այն ո՛չ միայն ժամանակի հիանալի քննությունը բռնեց, այլև բանվորական մի շարք նախաձեռնությունների ու հայրենանվեր գործերի հիմք դարձավ: Այդ շարժմանը «Պրավդան» այսպես արձագանքեց 1975 թ. մայիսի 16-ի իր համարում. «Լենինականի Մայիսյան ապստամբության անվան տեքստիլ կոմբինատի երիտասարդ բանվորներն ու վարպետ-դաստիարակները կազմակերպել են կոմպլեքսային մրցություն աշխատանքի արտադրողականության բարձրացման և գերազանց որակի արտադրանքի ավելացման համար:

Երիտասարդ բանվորները, ովքեր դեռևս լիովին չեն տիրապետում իրենց մասնագիտությանը, վճռեցին ամեն ամիս ավելացնել յուրաքանչյուր հաստոցից արտադրանքի թողարկումը, որպեսզի մինչև հնգամյակի ավարտը հասնեն առաջավորների մակարդակին: Փորձառու կոմունիստ տեքստիլագործները, ձեռնարկության լավագույն վարպետները, վարպետ-դաստիարակների խորհրդի անդամները օգնում են նրանց այդ գործում»:

Դա միայն սկիզբն էր: Բանվորական նախաձեռնությունը հետագայում տարածվելու, ծավալվելու էր: Եվ, իրոք, այն ծնունդ տվեց հայրենասիրական նոր գործերի ու ձեռնարկումների և շարունակում է իր կարևոր դերը խաղալ միավորման կյանքում:

Վարպետ-դաստիարակների շարժումը ժամանակի նախանշանն է: Չէ՛ որ մրցության այս ձևի մեջ կան կոմունիստականի ծիլերը: Երիտասարդության կոմունիստական դաստիարակության և մասնագիտական պատրաստության բարձրացման այս ձևը, որ լայնորեն տարածվել է արդյունաբերական ձեռնարկություններում, մասնագիտական-տեխնիկական ուսումնարաններում, վերջին տարիներին՝ նաև առևտրի, ծառայության և այլ ոլորտներում, մեր երկրում երևան է եկել դեռևս 30-ական թվականներից, բայց առավել լայնորեն տարածվել և գործնականություն է ձեռք բերել 70-ական թվականներին: 1975 թվականին էր, որ սահմանվեց «Երիտասարդության վարպետ-դաստիարակ» պատվավոր կոչման կրծքանշանը:

Հարուստ փորձ ու գիտելիքներ ունեցող վարպետներին ու բազմահմուտ բանվորներին արժանի հերթափոխ պատրաստելու գործում իսկապես անգնահատելի է բազմափորձ վարպետ-դաստիարակների դերն ու նշանակությունը:

Վարպետ-դաստիարակների շարժումը, որը կարևորվեց նաև ՍՄԿԿ XXVI համագումարում, այսօր մեծապես օգնում է տեքստիլագործների կոլեկտիվին աշխատանքային արժանի հերթափոխ պատրաստելու գործում:

Նոր շարժման ըստ ամենայնի արմատավորումով ձեռնարկության տարեգրությունը հարստացավ բազում գեղեցիկ գործերով, որոնք դարձան կոլեկտիվի երիտասարդ հերթափոխի աշխատանքային, կոմունիստական և բարո-

դաստիարակներից լավագույններին ամեն եռամսյակ, դրամական պարգևի հետ
միասին, շնորհվում են փոխանցիկ հուշադրոշներ, սաներին՝ «Վարպետության
ոսկե բանալի» խորհրդանշաններ, որոնց վրա փորագրվում են այդ մրցությու-
նում հաղթողների անունները։ Ստացած պարգևները (հուշադրոշն ու «Վար-
պետության ոսկե բանալի» խորհրդանշանը) հավերժ պահպանության են
հանձնվում միավորման «Աշխատանքային փառքի թանգարանին»՝ որպես
ձեռնարկության աշխատանքային սխրանքների վկայություն։ Նման պարգև-
ներ սահմանվել են միավորման բոլոր ֆաբրիկաներում, և դրանց շնորհման
արարողությանը կուսակցական ու հասարակական կազմակերպությունները
ջանում են դաստիարակչական լիցք հաղորդել։

Լավագույն վարպետ-դաստիարակների խրախուսման համար կիրառվում
են տարբեր ձևեր ու եղանակներ։ Նրանց նախապատվություն է տրվում հան-
գըստյան տների, առողջարանային ու տուրիստական շրջագայության ուղեգրեր
(երբեմն անվճար) հատկացնելու գործում, քաղաքային տրանսպորտով ան-
վճար երթևեկելու համար տրվում են համապատասխան տոմսեր, ցանկացած
ժամանակ ձևակերպվում է նրանց արձակուրդը, նրանք երկրի առաջավոր ձեռ-
նարկություններն են գործուղվում փորձի փոխանակման համար։

Վարպետ-դաստիարակների շարժումն օրվա պահանջն է, երիտասարդ սե-
րընդի համակողմանի դաստիարակության կարևոր և փորձված միջոցը։ Սր-
տադրամիավորման կուսկոմիտեն, արհմիութենական ու կոմերիտական կազ-
մակերպություններն իրենց ջանքերը կենտրոնացնում են այդ շարժման ձևերի
ու մեթոդների կատարելագործման, բանվորական արժանի հերթափոխ ստեղ-
ծելու վրա։

Գլխամասային ձեռնարկության կուսկոմիտեն, սկզբնական կուսկազմա-
կերպությունները և կուսխմբերն իրենց առաջնային գործն են համարում վար-
պետ-դաստիարակների շարժման արդյունավետության բարձրացումը, ամեն
ինչ անում են, որպեսզի անընդմեջ ավելանա ձեռնարկությունում լավ ըննու-
թյուն բռնած «Աշխատանքի արտադրողականության բարձրացման և գերա-
զանց որակի արտադրանքի ավելացման մրցություն-համագործակցություն»
վարպետ-դաստիարակների և ենթաշեֆերի հայրենասիրական նախաձեռնու-
թյան հատույցը։

Ամեն ամիս ամփոփվում են վարպետ-դաստիարակների և ենթաշեֆերի
մրցության արդյունքները, որոնց հիման վրա կուսկազմակերպությունները
մշակում են նրանց շրջանում տարվող գործնական աշխատանքի միջոցառում-
ներ։ Հիմնականում կարևորվում է ինչպես վարպետ-դաստիարակների, այնպես
էլ ենթաշեֆերի հոգսերի ու պահանջների բավարարումը, նրանց օգնության
կազմակերպումը։ Կարևոր տեղ է տրվում նյութական շահագրգռության բարձ-
րացման, խրախուսման հարցերին։

Պլանավորված կարգով կուսբյուրոների նիստերում լսվում են վարպետ-
դաստիարակների և առանձին սաների հաշվետվությունները։ Ընդ որում, բյու-
րոների նիստերին մասնակցում են մեծ թվով վարպետ-դաստիարակներ։ Հաշ-
վետվության ժամանակ ի հայտ եկած առաջավոր փորձը, նորն ու ուսանելին
երաշխավորվում են տարածելու և արմատավորելու ողջ կոլեկտիվում։ Քննարկ-
ման ժամանակ վարպետ-դաստիարակներին տրվում են գործնական խորհուրդ-
ներ ու ցուցումներ, առանձին հանձնարարականներ՝ կատարման ժամկետնե-
րով և պատասխանատու անձերով։

Հատուկ ուշադրություն է նվիրվում վարպետ-դաստիարակների ուսուցմա-
նը։ Տեսական պարապմունքների ժամանակ ունկնդիր վարպետ-դաստիարակ-
ները սովորում են արտադրական մանկավարժության և սոցմրցության կազ-
մակերպման հանգուցային հարցերը, բարեկիրթ վարվեցողության ձևերն ու
եղանակները, սոցիոլոգիական փոքր հետազոտություններ կազմակերպելու,
սաներին իրենց հետ կապելու մեթոդները։ Դեռահասների տարիքային առանձ-
նահատկություններին, բնավորության գծերին ևս տեղ է հատկացվում պարապ-
մունքներում։ Իսկ գործնական պարապմունքների ժամանակ, որոնք կազմա-
կերպվում են արտադրական տեղամասերում և ուսումնադասընթացային կոմ-



բինատի հարուստ կահավորված կաբինետներում, լաբորատորիաներում և ու-
սումնական արհեստանոցներում, իրենց մասնագիտական փորձն ու վարպե-
տությունն են ցուցադրում լավագույն վարպետները։ Պարապմունքների ժա-
մանակ կիրառվում են դիտողական պարագաներ, պլակատներ, նյութեր։

Կուսկազմակերպություններն առանձնահատուկ ուշադրություն են նվիրում
վարպետ-դաստիարակների գաղափարական կոփվածքին։ Կուսկազմակերպու-
թյունները հոգ են տանում, որպեսզի նրանք ներգրավվեն քաղուսուցման խըմ-
բակներում, մշտապես բարձրացնեն իրենց մասնագիտական և քաղաքական
գիտելիքները, դաստիարակվեն հարազատ ձեռնարկության գործերի հանդեպ
պատասխանատվության ոգով։

Ամեն տարի կազմակերպվում են քաղաքային և հանրապետական հավաք-
ներ ձեռնարկության մշակույթի պալատի մեծ սրահում, որին մասնակից լա-
վագույն վարպետ-դաստիարակները փորձ են փոխանակում, տալիս աշխա-
տանքի գնահատականը, մշակում գործնական հանձնարարականներ շարժման
հետագա առաջընթացի համար։ Կուսկոմիտեն մեծ հետևողականություն է հան-
դես բերում, որպեսզի կուսկազմակերպությունների ընդունած բոլոր որոշում-
ները կատարվեն անվերապահորեն, նպաստեն արժանի հերթափոխի ստեղծ-
մանը՝ վարպետ-դաստիարակների շարժման ծավալմանը։

ՍՄԿԿ XXVI համագումարում Կենտկոմի հաշվետվության մեջ ընկեր Լ. Ի.
Բրեժնևը նշեց. «Այն երիտասարդները, որոնք այսօր 18—25 տարեկան են,
վաղը կազմելու են մեր հասարակության հիմնախարիսխը։ Նպաստել, որ կազ-
մավորվի քաղաքականապես ակտիվ, իրենց գործն իմացող, աշխատանքը սի-
րող և աշխատել կարողացող մարդկանց սերունդ, որոնք միշտ պատրաստ լի-
նեն պաշտպանելու իրենց հայրենիքը. ահա ամենակարևորը, ամենագլխավորը
կոմերիտմիության աշխատանքում»։ ՀամԼԿԵՄ Կենտկոմի առաջին քարտուղար
Բ. Ն. Պաստուխովը, համագումարում խոսելով վարպետ-դաստիարակների
շարժման մասին, նշեց, որ երկրի աշխատանքային ռեսուրսների կրճատումը
առաջին պլան է մղում հասարակական արտադրությունում պատանիներին և
աղջիկներին առավելագույն արդյունավետությամբ ընդգրկելու անհրաժեշտու-
թյունը։ Աշխատանքային կյանք մտնողներին ոչ միայն պետք է տալ սկզբնա-
կան մասնագիտական լավ պատրաստվածություն, այլև անընդհատ հարըս-
տացնել նրանց գիտելիքները, բարձրացնել վարպետությունը։

Հայկական ՍՍՀ Գերագույն սովետի երիտասարդության գործերի հանձ-
նաժողովն անցյալ տարվա կեսերին ուսումնասիրեց և քննարկեց արդյունա-
բերական ձեռնարկություններում վարպետ-դաստիարակների շարժման վի-
ճակի վերաբերյալ հարցը և նշեց այդ ասպարեզում Լենինականի տեքստիլա-
գործների ծավալած արդյունավետ գործունեությունը։

# ԿՆՈՒՆՅԱՆՑԻ ԴՊՐՈՑԸ



ՍՏԵՂԾԱԳՈՐԾԱԿԱՆ ԲԱՑԱՌԻԿ ընդունակությունների և կրակոտ խառնվածքի, ճըշմարտությունն իմանալու և հանուն ճշմարտության պայքարելու բուռն, մշտական ձգտման շնորհիվ ակադեմիկոս Իվան Լյուդվիգի Կնունյանցը վաստակել է գիտական հասարակայնության խոր հարգանքը:

Լայն պրոֆիլի քիմիկոս-գիտնականի բազմակողմանի գործունեությունը մեր երկրում արժանացել է բարձր գնահատականի: Լենինյան մրցանակի և ՍՍՀՄ երեք պետական մըրցանակների դափնեկիր Ի. Լ. Կնունյանցը քիմիական գիտության և արդյունաբերության զարգացման գործին մատուցած բացառիկ ծառայությունների համար արժանացել է Սոցիալիստական աշխատանքի հերոսի կոչման, կառավարական բարձր պարգևների:

Իվան Լյուդվիգի Կնունյանցը ծնվել է 1906 թ. հունիսի 4-ին, Ելիզավետապոլի նահանգի Շուշի քաղաքում: Հայրը՝ լեռնային ինժեներ Լյուդվիգ Մինաևիչ Կնունյանցը, ակտիվ մասնակցել է Անդրկովկասի հեղափոխական շարժմանը, ՌՍԴԲԿ անդամ է 1901 թվականից, եղել է Բաքվի գործադուլային կոմիտեի նախագահը, եղբայրն է ականավոր պրոֆեսիոնալ հեղափոխական, Լենինի մերձավոր զինակից Բոգդան Կնունյանցի:

...Կնունյանցների ընտանիքում հարգված էր աշխատանքը: Մանկուց իսկ Իվանը ջանասեր էր, ճշմարտասեր, սիրում էր աշխատանքի մարդկանց, հետաքրքրվում գիտելիքներով: Այդ հակումները, ուսման տենչը առավել դրսևորվեցին պատանի հասակում, երբ սովետական իշխանությունն անսահման հնարավորություններ էր ընձեռել այդ հակումների դրսևորման համար:

Միջնակարգ կրթությունը Վանյան ստացել է Գրոզնիում, ուր 1923 թ. ավարտել է երկրորդ աստիճանի դպրոցը: Նույն թվականին նա ընդունվել է Մոսկվայի բարձրագույն տեխնիկական ուսումնարանը: Ռեկտորատին ուղղված նրա դիմում-խնդիրքն ավարտվում է հետևյալ տարօրինակ խոսքերով. «...Ես ընդունվում եմ քիմիական ֆակուլտետը՝ ոչ մի հակում չունենալով և ուզում եմ աշխատել միայն էլեկտրատեխնիկայի բնագավառում»: Արտադրական ստաժ չունենալու պատճառով մերժեցին նրան ընդունել էլեկտրատեխնիկական ֆակուլտետը: Հավանաբար երկրորդ կուրսում նա կփոխադրվեր այդ ֆակուլտետը, եթե չհանդիպեր ակադեմիկոս Ա. Ե. Չիչիբաբինին՝ օրգանական քիմիայի ամբիոնի վարիչին:

Ալեքսեյ Եվգենևիչ Չիչիբաբինը, որի դասագրքերով այսօր էլ սովորում է ուսանող երիտասարդությունը, ուսուցիչն է մի շարք խոշոր գիտնականների, որոնց թվում և ֆթորօրգանական միացությունների հայրենական քիմիայի ստեղծող Իվան Լյուդվիգի Կնունյանցի:



Կնունյանցի համար ժամանակի ընթացքում հետզհետե հարթվեց անհարիր երկու գիտությունների՝ էլեկտրատեխնիկայի ու քիմիայի կոնֆլիկտը: Նա հրապուրվեց օրգանական քիմիայի պրոցեսներով և դրա արտակարգ հնարավորություններով:

Այսպես, մեծ գիտնական-հոգեբան-պրոֆեսոր Չիչիբաբինը կարողացավ գիտության գաղտնիքներն ըմբռշխնելու ձգտող պատանուն համակել սիրով օրգանական քիմիայի առեղծվածային աշխարհի նկատմամբ:

Ընտրությունը կատարված էր ողջ կյանքի համար: Նրանք երկուսն էլ՝ պրոֆեսոր Չիչիբաբինը և ուսանող Կնունյանցը, ունեին իրենց իդեալները, և այդ ժամանակվա համեստ պայմաններում նրանք ընտրում էին գլխավոր ուղղությունը և գոտեմարտի բռնվում գիտությանը դեռևս անհայտ երևույթների հետ: Դժվարությունները, անհաջողությունները հուզում, բայց չէին ընկճում նրանց:

Երբ ես ծանոթացա Իվան Լյուդվիգովիչի հետ, նա արդեն պրոֆեսոր էր, քիմիական գիտությունների դոկտոր: Հայրենական մեծ պատերազմի նախօրյակին էր, երբ Կնունյանցը ՍՍՀՄ գիտությունների ակադեմիայի օրգանական քիմիայի ինստիտուտի հետերոցիկլիկ միացությունների քիմիայի լաբորատորիայի ավագ գիտաշխատող էր: Լինելով միութենական ռադիոյի «Վերջին լուրերի» խմբագրության գրական աշխատողը՝ ես ծանոթացա Կնունյանցի քրոջ հետ, որը խմբագիր էր ռադիոյի խմբագրություններից մեկում: Իմ խնդրանքով նա ծանոթացրեց ինձ եղբոր՝ Իվան Կնունյանցի հետ: Ահա այդ ժամանակվանից սկսվեց մեր բարեկամությունը, որը տարիների հետ սերտացավ, չնայած մենք այնքան էլ հաճախ չէինք կարողանում հանդիպել: Հիշում եմ, թե այն հեռավոր ժամանակներում ինչպիսի ոգևորությամբ էր նա պատմում ուսանելու տարիների, Չիչիբաբինի մասին:

— Մոսկվայի բարձրագույն տեխնիկական ուսումնարանում ուսանելու տարիներին, այսինքն՝ 20-ական թվականներին, պետք էր վճարել ուսման վարձ, կրել ուսանողական համազգեստ (տուժուրկա) և գլխարկ,,— այսպես սկսեց իր պատմությունը Կնունյանցը:— Դժվար էր այդ ամենի փողը միանգամից ճարել, և ես դիմեցի՝ ուսման վարձից ինձ ազատելու խնդրանքով: Ինձ օգնեց պրոֆեսոր Չիչիբաբինը, ուսման վարձից ես ազատվեցի: Այն ծանր օրերին, երբ հազիվ հաց ու կվասի փող էինք ունենում, այդ ինձ համար մեծ օգնություն էր:

Պրոֆեսոր Չիչիբաբինի դասախոսությունների մասին ավելի հանգամանորեն պատմելու իմ խնդրանքին Կնունյանցը ջերմորեն արձագանքեց.

— Շատ յուրօրինակ էր նա կարդում դասախոսությունները, ընդունում քննությունները: Նրան չէր հետաքրքրում խոսքի երևութական գեղեցկությունը: Խոսում էր արագ, հանպատրաստից ստեղծագործելով ու իր նորանոր մտքերը պարզաբանելով: Ֆորմուլաները գրատախտակի վրա հայտնվում էին նույնքան արագ, որքան արագ ջնջվում էին: Այնպես որ քչերին էր հաջողվում գրառումներ կատարել: Կամաց-կամաց ուսանողների մի մասը հեռանում էր լսարանից: Դասընթացի վերջում մընում էինք ութ-ինը հոգի՝ անկեղծորեն սիրահարված քիմիային ու մեր պրոֆեսորին: Եվ ամենից խիստ մեզ հետ էր վարվում քննությունների ժամանակ: Գիտե՞ք որքան էր տեվում չիչիբաբինյան քննությունը: Երեք, երբեմն էլ չո՜րս օր: Քննում էր ողջ դասագրքով, գլուխ առ գլուխ, ջանալով պարզել ուսանողի ինքնուրույն մտածելու ունակությունը: Նա զարգացնում էր ուսանողների քիմիական ինքնուրույն մտածողությունը, նշանակետ ընտրելով ոչ թե թերացողներին, անտարբերներին, այլ գիտությամբ հրապուրվածներին:

— Այդ ձեզ դո՞ւր էր գալիս,— հարցրի ես:

— Անշո՜ւտ: Ընդհանրապես լավ էին սովորեցնում, առանց շտապելու: Ուսման տևողությունն այնպես խիստ սահմանված ու սահմանափակված չէր, ինչպես այժմ. դիպլոմային աշխատանքին հատկացվող ժամանակը ևս լիմիտավորված չէր: Երբ բանը հասնում էր դիպլոմին, Չիչիբաբինն ամենից առաջ հարցնում էր, թե ինչպիսի՞ թեմա կկամենար ընտրել ինքը՝ ուսանողը: Հարցրեց և ինձ: Ընտրածս թեմաներն ավարտելու փորձերը երկու անգամ ձախողվեցին: Այդ ժամանակ պրոֆեսոր Չիչիբաբինն առաջարկեց ինձ ձեռնարկել երրորդ թեմային: Սինթեզումը հաջող անցավ: Մոտ մի տարի զբաղվեցի դրանով, նոր միայն պաշտպանեցի դիպլոմային աշխատանքը:

Դիպլոմը պաշտպանելուց հետո ես ՄԲՏՈՒ-ն ավարտեցի՝ նավթի ինժեներ-տեխնոլոգի կոչումով, և Չիչիբաբինի հանձնարարականով ինձ պահեցին օրգանական քիմիայի ամբիոնում՝ որպես օրգանական քիմիայի ամբիոնի ասիստենտ: Հենց այդ ժամանակ էլ՝ 1928 թվականին, իմ սիրելի պրոֆեսորին ընտրեցին ակադեմիկոս:

— Բարձր կոչումը փոխե՞ց արդյոք Ձեր ուսուցչի ապրելակերպը,— հարցրի ես:

— Ամենևի՜ն,— ոգևորությամբ պատասխանեց Կնունյանցը:— Ամեն օր Ալեքսեյ Եվգենևիչը լաբորատորիա էր գալիս առավոտյան ճիշտ 9-ին, հագնում էր ներմակ խալաթը և

գլխավոր խմբագիրն է իր իսկ հիմնադրած Դ. Մենդելեևի անվան համամիութենական քիմիական ընկերության ամսագրի, գիտական և գիտամասսայական շատ ամսագրերի խմբագրական կոլեգիայի անդամ է, սովետական մեծ հանրագիտարանի գիտախմբագրական կոլեգիայի անդամ։

Ծավալուն աշխատանք է տանում Իվան Լյուդվիգովիչը ՍՍՀՄ Մինիստրների խորհրդին կից Լենինյան և ՍՍՀՄ պետական մրցանակների կոմիտեում, գիտության ու տեխնիկայի բնագավառում։ Ոչ ոք չի կարող անտարբեր լինել նրա կրքոտ, անզիջում ելույթների նկատմամբ՝ ի պաշտպանություն կամ ընդդեմ այս կամ այն առաջարկի։ Ակտիվ է նրա գործունեությունը նաև ՍՍՀՄ քիմիական և բժշկական արդյունաբերության մինիստրության գիտատեխնիկական խորհուրդների նիստերում։

Առինքնող է Կնունյանցի մարդկային խառնվածքը։ Լսենք պրոֆեսոր Ստեռլինին.

— Իվան Լյուդվիգովիչը կրակոտ մարդ է, կարող է և բղավել։ Բայց ով նրան երկար ժամանակ գիտե, նրա գոռալուց չի վախենում. Կնունյանցը գոռում է, իսկ նրա աչքերը բարի՜, բարի են։ Ու թերևս երկու, գուցե երեք անգամ եմ տեսել, թե ինչպես չարանում են Կնունյանցի աչքերը, և միշտ այդ լինում է այն ժամանակ, երբ նա բախվում է անարդարության։

Մտածում ես, որտեղի՞ց է փայլուն ընդունակությունների այս ընտանիքը, որը կոչվում է Կնունյանցի դպրոց։ Ինքն է գտել, ինքն է օգնել, փրկել դժբախտությունից շատերին, այնպիսիներին, որոնց ուրիշները դադարել են նույնիսկ բարևել։

— Ահա մի եղելություն,— շարունակում է Ստեռլինը.— վերջերս վախճանվեց Միխաիլ Կոնստանտինովիչ Բարանաևը՝ խանդավառ, հոյակապ ֆիզիկոս-քիմիկոսը։ Իսկ պատմությունն այսպիսին էր։ Գնդապետ Բարանաևը, վերադառնալով բանակից, հրապուրվեց աստրոֆիզիկայով։ Մաթեմատիկա նա լավ գիտեր, հաշվարկեց տիեզերքի ընդարձակման արագությունը և հանգեց այն եզրակացության, որ մի ժամանակ այն փոքր է եղել, և ինչ-որ հարված հարկադրել է նրան ընդլանվել։ Այժմ այդ տեսությունն արդեն համընդհանուր ճանաչում է գտել, իսկ այն ժամանակ քիչ մնաց Բարանաևին աշխատանքից հեռացնեին։ Ո՞վ է այդ հարվածը հասցրել, հարցնում էին նրան շատ շատերը... Կնունյանցը պաշտպանեց ընկերոջը։ Օրերով կարելի է պատմել այն մասին, թե ինչպես էր նա պաշտպանում առաջավոր տեսությունները։

Ահա մի այլ եղելություն։ Պատերազմի ժամանակ բռնեցին մի պահակի, որ կոշիկների մեջ վարսակ էր լցրել, ուզել էր տանել իր հիվանդ կնոջ համար, որ քաղցից ուռել էր։ Մարդիկ տարբեր են լինում. մեկը պահանջում էր դատի տալ նրան։ Եվ այդտեղ ես առաջին անգամ տեսա, թե ինչպես այդ մարդն ուղղակի դուրս շպրտվեց Կնունյանցի աշխատասենյակից։ Տեսա և ուրախացա։ Այնպես որ, Աշոտ Մարտիրոսովիչ, երբ թվարկելու լինեք մեր ակադեմիկոսի ծառայությունները, այս եղելությունները նույնպես ավելացրեք։

Ես խոստացա։

...Ես նորից այցելեցի Իվան Լյուդվիգովիչին Մոսկվա գետի ափին գտնվող նրա բնակարանում։ Պատմեցի նրա աշակերտների հետ ունեցած հանդիպումներիս մասին, սկսեցի թվարկել և հաշիվը կորցրի. չէ՞ որ արդեն Կնունյանցի քիմիական ծոռներն են աշխատում և ուրախացնում իրենց ուսուցչին։

Իվան Լուդվիգովիչը վեր կացավ։ Տնային աշխատասենյակում լսվում էր գիտնականի բարձր ու զիլ ձայնը։

Որքա՜ն սեր, հիացմունք կար նրա խոսքերում իր սաների տարբեր սերունդների նկատմամբ, ինչպիսի՜ դիպուկ բնութագրումներ բնավորությամբ այդքան տարբեր մարդկանց։

Լռություն տիրեց։ Հետո նայեց ինձ իր խելացի, թափանցող հայացքով և բացականչեց.

— Իսկ գիտե՞ք, թե ինչի համար եմ ես այդպես շատ սիրում իմ աշակերտներին— խիզախելու համարձակության, այն ժամանակ, երբ ուրիշները հուսալքվում են, նահանջում, նրանք շարունակում են աշխատել։

Այս տարի լրացավ Իվան Լյուդվիգովիչի յոթանասունհինգ տարին։ Կյանքի ավելի քան կես դարը նա նվիրել է գիտությանն ու տեխնիկային։ Կնունյանցի կյանքում գլխավորը աշխատանքն է։ Առավոտ վաղ անկողնուց վեր կենալ չի հասցնում, աշխատանքը գամում է նրան գրասեղանին։ Ուղիղ ժամը իննին Կնունյանցին կարելի է տեսնել լաբորատորիայում, ճերմակ խալաթով...

Կնունյանցը խոսում էր մեր երկրում քիմիայի զարգացման հեռանկարների մասին։ Գիտնականի միտքը գործում է մշտապես, նույնիսկ այն ժամանակ, երբ նրա թռուցիկ խոսքերն իսկ վկայում են, որ նրա ուշադրությունը բևեռված է խոսակցի վրա։ Տիրում է լռություն... Ես զգում եմ՝ ինչպես Իվան Լյուդվիգովիչը, կլանված սևեռուն գաղափարով, ստեղծագործական պոռթկումի պահին շտապ վերցնում է թղթի կտորը և արագ կատարում գրառումներ։

Իմ այն հարցին, թե մարդու մեջ ամենից շատ ինչն եք գնահատում, գիտնականը պատասխանեց. «Հրապուրվածությունը, համեստությունը»։ Իսկ ի՞նչն եք ամենից շատ ատում հարցին անմիջապես պատասխանեց. «Մեծամտությունը, հրամայական տոնը»։

Հրաժեշտ տալով՝ Կնունյանցը հանգիստ նկատեց.

— Աշոտ Մարտիրո՛սովիչ, ավելի շատ գրեք աշակերտներիս մասին, նրանք իմ հուսալի օգնականներն են, նրանք մեր ապագան են։

Գիտնականը իրավացի էր։ Այդ է հենց Կնունյանցի համոզմունքը։ Դրանում անձամբ համոզվեցի։ Ձեռնարկելով այս հոդվածին՝ ես միշտ հիշել եմ Կնունյանցի այս խնդիրքը, հար մտածել եմ կարողանալ գտնել ո՛չ միայն ուսուցչի, այլև նրա արժանավոր աշակերտների կերպարների բնորոշ հատկանիշները։ Միշտ զգացել եմ, թե որքա՜ն կարևոր ու պատասխանատու է ստանձնածս գործը։ Եվ արել եմ, ինչ ուժերս ներել են։

...Մինչ գրվում էին այս տողերը, ակադեմիկոս Կնունյանցը՝ փառքով պսակված և համընդհանուր ճանաչման արժանացած յոթանասունհինգամյա գեներալը, գիտնականը, կոմունիստը, առաջվա նման չթուլացող եռանդով ամեն առավոտ մտնում է իր լաբորատորիան և շարունակում համարձակ որոնումները։

**Ա. Մ. ԱՐԶՈՒՄԱՆՅԱՆ**

# Մ. ՆԱԼԲԱՆԴՅԱՆԻ ԱՆՆԿՈՒՆ ԳԱՂԱՓԱՐԱԿԻՑԸ

(Հարություն Սըվաճյանի ծննդյան 150-ամյակի առթիվ)

ՆԵԼԼԻ ԱՆԱՆՅԱՆ

ԿԱՆ ՄԱՐԴԻԿ, ՈՐՈՆՑ վիճակված է խոշոր դեր խաղալ հասարակական առաջընթացի գործում: Պատմականորեն անհրաժեշտ է նրանց գոյությունը տվյալ ժամանակաշրջանում և կարծես օրինաչափ ինքնազոհաբերումը՝ հանուն ժողովրդի լուսավոր ապագայի: Այդպիսի գործիչներից է Հարություն Սըվաճյանը: Հանդես գալով XIX դարի 50—60-ական թվականներին՝ նա դարձավ արևմտահայ կյանքի, դեմոկրատական շարժման փայլուն դեմքերից մեկը: Նրա գրական-հրապարակախոսական և հասարակական-քաղաքական գործունեությունը նշանավորվեց արևմտահայերի ամենաառաջադիմական պարբերականի՝ «Մեղվի» հիմնադրմամբ և Միքայել Նալբանդյանի հետ գաղափարական զինակցությամբ: Իր ապրած 43 տարիների ընթացքում Սըվաճյանը ծավալեց լուսավորական բազմակողմանի գործունեություն, որն ընդգրկում էր հասարակագիտության, հրապարակախոսության, գեղարվեստական գրականության, մանկավարժության, գրաքննադատության բնագավառները: Նրա լուսավորական գործունեությունը հանդիպադրվեց արևմտահայ կյանքում ազգային-ազատագրական շարժման գաղափարների ձևավորման հետ:

Արդեն 40-ական թվականների վերջերին և 50-ականների սկզբին Պոլսում ձևավորվում էր ազգային այն մտավորականությունը, որի նպատակն էր կազմակերպել ազգի հոգևոր վերածնունդը: Մամուլ, դպրոց, ընկերություններ, թատրոն, բարեգործական հաստատություններ— ահա հիմնականում այն բնագավառները, որտեղ պետք է գործադրեր իր ուժերը պոլսահայ մտավորականությունը: Եվ, իրոք, 40-ական թվականների վերջերին երևան է գալիս «Համազգյաց ընկերությունը»՝ իր ծրագրային պահանջներով և առաջադրություններով: «Համազգյացի» շուրջը համախմբված երիտասարդ մտավորականությանը հետաքրքրում էին, առաջին հերթին, ազգային հոգևոր դիմորոշման ուղիներն ու միջոցները: Մ. Պեշիկթաշլյանի՝ «Համազգյացի» հիմնադրման առիթով արտասանած ճառը բացահայտում է ժամանակի երիտասարդության ազգային վերանորոգչական ծրագրերի և գործունեության բովանդակությունը: Գաղափարական մի նոր շարժման սկիզբ էր դա, որ երևան էր գալիս ազգային զարթոնքի, ազատագրական պայքարի ընդհանուր աշխուժացման ֆոնի վրա:

Պայքարը ֆեոդալական հետամնաց կարգերի դեմ և բուրժուադեմոկրատական մտայնության «ազատության և հավասարության» հետանկարները մասնատված հայ ժողովրդի մեջ արթնացրին ինքնավարության և սոցիալ-տնտեսական բարելավման հույսը: Ֆեոդալական Թուրքիայի ընդերքում զարգացող բուրժուական հարաբերությունները մտավորականության համար սահմանադրական նոր օրենադրության ձեռքբերման հուսալի երաշխիք էին: «Ազգային սահմանադրության» իրականացման համար արևմտահայության ծավալած երկարատև պայքարը կյանքի ղեկավարությունը խլեց բացարձակ դիրք գրավող և քաղաքական լիազորություններ ունեցող պատրիարքարանի ձեռքից և հանձնեց ընտրովի մի մարմնի՝ Ազգային ժողովին: Թուրքական կառավարությունից կորզել իրենց ներքին կյանքի ղեկավարությունը ընտրովի մի կազմակերպության հանձնելու իրավունքը նշանակալից երևույթ էր հայ իրականության մեջ, որի շուրջ բորբոքվեցին կրքեր, ծավալվեց հասարակական տարբեր հոսանքների գաղափարական պայքար:



Հարություն Սըվաճյանը ասպարեզ իջավ սահմանադրական շարժման եռուն օրերին և դարձավ դրա դեմոկրատական հոսանքի գաղափարախոսն ու պարագլուխը:

Հարություն Սըվաճյանը ծնվել է 1831 թվականին, Պոլսի Խասգյուղ թաղամասում, արհեստավորի ընտանիքում: Կարիքի ու զրկանքի մեջ է անցել ապագա հրապարակախոսի մանկությունը. «Աղքատի զավակ էր,— վկայում է Հրանտ Ասատուրը,— և Խասգյուղի հայ ընկերության հետին խավերուն մեջ ապրած էր իր կյանքի առաջին տարիներն» (Հրանտ Ասատուր, **Դիմաստվերներ**, 1921, էջ 89): Հետագայում իր ապրածն ու տեսածը, ժողովրդի ցածր խավերի հարստահարումն ու տնտեսական ծանր վիճակը նա նկարագրում է իր վաղ շրջանի գեղարվեստական գործերից մեկում՝ **Թագունի** վիպակում: Պատանի Հարությունին բախտ է վիճակվում կրթություն ստանալ: Նա շփվում է Օտյանների՝ ժամանակի առաջադեմ մտավորական ընտանիքի և նրանց որդու՝ Գրիգոր Օտյանի հետ, աշակերտում Խաչատուր Միսաքյանին և Խաչատուր Պարտիզպանյանին: Վերջինս, Պալյան հարուստ ընտանիքի որդիներին ուղեկցելով Փարիզ՝ Սենթ-Պարպի դպրոցն ընդունել տալու, մեկ տարի մնում է այնտեղ, մոտիկից շփվում եվրոպական լուսավորականության ու քաղաքակրթությանը, հասարակագիտական մտքին և հեղափոխական խմորումներին: Վերադառնալով Պոլիս՝ նա իր հետ բերում է լուսավոր հայացքներ, առաջադիմական գաղափարներ, որոնք և հաղորդում է իր աշակերտներին:

Եվրոպական քաղաքակրթությունն այդ շրջանում թափանցում է արևմտահայ իրականություն, ամենից առաջ Ֆրանսիայում կրթություն ստացած հայ երիտասարդների շնորհիվ: Վենետիկի Մուրադ-Ռափայելյան վարժարանում և ֆրանսիական համալսարաններում սովորող ուսանողները հաղորդակցվում էին գիտական նորություններին, առաջավոր գաղափարներին, նրանցից ոմանք (Նիկ. Զորայանը, Ն. Ռուսինյանը, Ստ. Ոսկանյանը) շփվում, մասնակցում էին հեղափոխական շարժումներին: Արտասահմանում կրթություն ստացած հայ ուսանողները վերադառնալով հայրենիք՝ լուսավորական-քաղաքական լայն գործունեություն էին ծավալում Պոլսում: Այսպիսով, մտավորական շարժման խոշոր կենտրոնը Ֆրանսիան էր և, ինչպես Ալպոյաճյանն է գրում, «40-ական թվականներին Փարիզը կդառնար նշանավոր խառնարան մը հայուն համար, զի հոն կը դարբնվեր հեղաշրջումը թրքահայ մտքին և գրականության...» (**Ընդհանուր օրացույց**, 1910, էջ 23):

Լուսավորական շարժման ներկայացուցիչներից մեկի՝ Խաչատուր Պարտիզպանյանի ուսման ծարավի աշակերտները՝ Գր. Օտյանը և Հ. Սըվաճյանը, յուրացնում էին լեզուներ, կարդում եվրոպական, անտիկ և հայրենի գրականություն, ամբարում գիտելիքների մեծ պաշար:

1850-ական թվականներին Օտյանների աջակցությամբ Սըվաճյանը ձեռնարկում է հրապարակախոսական գործունեության, 1856 թվականին հիմնում է «Մեղու» պարբերականը, մինչև իր կյանքի վերջը հրատարակում այն և լիովին նվիրաբերում իրեն հասարակական-քաղաքական ու գրական գործունեությանը:

Սըվաճյանի գործունեությունը հիմնականում արտացոլված է «Մեղվի» էջերում: Սկզբից իսկ պարբերականի խմբագիրը սուլթանական ռեժիմի և կղերա-ամիրայական ռեակցիայի դեմ ծավալած իր անհանդուրժողական պայքարի համար վաստակել է բազում թշնամիներ: «Մեղուն» հաճախ արգելվել և ժամանակ առ ժամանակ փակվել է գրաքննության կողմից: Սակայն խմբագիրը Մեչուխեչայի բերանով (Սըվաճյանի հորինած մի երևակայական կերպար, որ մունետիկի դեր է կատարել) հայտարարում էր իր հավատարմությունը «Մեղվին». «Ո՛չ հուր, ո՛չ սուր կրնան պիտի մեզի իրարմե զատել...» («Մեղու», 1864, թիվ 248): Նա չի աշխատակցել ուրիշ որևէ պարբերականի, քանի որ դրանք գոհացում չէին տալիս իր պահանջներին ու խիզախ որոնումներին: Մեծագույն խոչընդոտների, «դժվարությունների ու փորձությունների» հաղթահարման գնով Սըվաճյանն իր համախոհների աջակցությամբ կարողանում էր ամեն ընդհատումից հետո «Մեղվի» գործունեությունը դարձնել ավելի նպատակասլաց ու ազդեցիկ: Հետզհետե այդ պարբերականը մեծ հեղինակություն է ձեռք բերում, նրան են աշխատակցում ժամանակի առաջադեմ մտավորականները՝ Գր. Օտյանը, Արմ. Հայկունին, Աբր. Մուրադյանը և ուրիշներ: «Մեղվին» իր թղթակցություններն է ուղարկել նաև Միքայել Նալբանդյանը, իսկ խմբագրի կյանքի վերջին տարիներին նրան համագործակցել և պարբերականի հրատարակմանը մասնակցել է Հակոբ Պարոնյանը: Հանձին Պարոնյանի Սըվաճյանը

տեսնում էր անձնվեր մի գործչի, իր գաղափարակցին ու ամենատաղանդավոր աշխատակցին, մի երիտասարդի, որ վստահորեն կարող էր շարունակել իր գործը, և որին էլ 1872 թվականին լիովին հանձնում է պարբերականի խմբագրությունը: Հետըզհետե սաստկացող թոքախտը Սըվաճյանին գամում է անկողնուն, սակայն այդ վիճակում էլ նա հայտնում է իր ընթերցողներին, որ ««Մեղվի» տնօրինությունը, խըմբագրությունը, վերջապես ամեն նեղությունը պ. Հ. Պարոնյանին հանձնելով», ինքը, սակայն, բոլորովին չի հեռանում «Մեղվից», այլ իրեն «վերապահում է երբեմն անոր խմբագրության օգնականությունը»: Այդպես էլ մինչև իր կյանքի վերջը (1874 թ.) Սըվաճյանը մնում է «Մեղվի» գաղափարական ուղղություն տվողը, նրա ոգին, մի պարբերական, որն իր հաստատուն տեղն ունի XIX դարի 60-ական թվականների հայ դեմոկրատական մամուլի օրգանների՝ «Արևելքի», «Արևմուտքի», «Հյուսիսափայլի», «Մյունատիի» կողքին:

Հարություն Սըվաճյանի գրական-հասարակական գործունեությունը կարելի է բաժանել երկու շրջանի—մինչև 1860 թվականը և դրանից հետո: Հրապարակախոսն ասպարեզ չիջավ որպես արմատական սկզբունքներ ունեցող գործիչ: Նրա լուսավորական գործունեությունն իր զարգացումն ապրեց: Սկզբում համեմատաբար սահմանափակ էին Սըվաճյանի հասարակագիտական հայացքները: Դա երևում է, օրինակ, նրա վերաբերմունքից Ստ. Ոսկանյանի հանդեպ— ազգային մի գործչի, որի Փարիզում հրատարակած «Արևելք» և «Արևմուտք» հանդեսները 50-ական թվականների առաջադեմ մամուլի օրգաններն էին: Դեմոկրատական գաղափարախոսությամբ տոգորված Մ. Նալբանդյանը նրան համարել է իր համախոհը, դրվատանքով, ոգևորությամբ արտահայտվել նրա խմբագրած հանդեսների մասին: Սըվաճյանի առաջին շրջանի գաղափարական դիրքորոշումը հեռու էր Ոսկանյանի «դպրոցից»: Երբ «Հյուսիսափայլի» էջերում Կոմս Էմմանուելը խորին հիացմունքով արձագանքեց «Արևմուտքի» հրատարակությանը, Սըվաճյանը «Մեղվում» մի ծաղրանկար տպագրեց, ուր պոլսեցիները ցախավելներով էին դիմավորում Ստ. Ոսկանյանին: Հետագայում նա փոխեց իր վերաբերմունքը մարտաշունչ հրապարակախոսի հանդեպ և գրեց. ««Արևմուտք»-ն ալ Բարիզեն սկսավ վերստին հրատարակվել, դարձյալ պ. Ս. Ոսկանի խմբագրությամբ, այն անձին, որ



գիշեր ցերեկ հայրենիք և ազատություն կերազե, հսկայաքայլ առաջադիմություն կը բաղձա ազգին...» («Մեղու» 1864, թիվ 236):

Սըվաճյանի հայացքներում այս փոփոխությունը բացատրվում է, առաջին հերթին, Մ. Նալբանդյանի ազդեցությամբ: Գաղափարապես աճելով երկրի տնտեսական-քաղաքական սուր հակասությունների պայմաններում, ծանոթանալով Նալբանդյանի ըմբռնումներին և անձամբ հանդիպելով նրան Պոլսում 1860 թվականին, Սըվաճյանը վերջնականապես կանգնեց ազատագրական-դեմոկրատական գաղափարախոսության դիրքերում, մինչև վերջ մնալով Նալբանդյանի զինակիցը:

Այդ մտածողների գործունեության էությունն ու ընդհանրությունը, ամենից առաջ, համազգային մերձեցման ըմբռնողությունն է, հայ ժողովրդի ազատագրական պայքարի և առաջադիմության համազգային (անկախ նրա երկու տարբեր հատվածների) մտահոգությունը: Պատահական չէ, որ Նալբանդյանը սերտ կապեր ուներ արևմտահայ մտավորականության հետ, թղթակցում էր «Մեղու» պարբերականին և անձամբ ծանոթ էր առաջադեմ շատ գործիչների: Նա, ինչպես և նրա համախոհ Սըվաճյանը, ձըգտում էր հասնել ազատագրական պայքարի միասնության, ազատագրական պայքար, որ պետք է տարվեր թե՛ ցարական և թե սուլթանական բռնակալությունների դեմ: Եվ 1860-ական թվականներից սկսած Սըվաճյանն անվերապահորեն կանգնեց հեղափոխական դեմոկրատիզմի դիրքերում: Նրա խմբագրած «Մեղուն» սկսեց նյութեր տպագրել «Հյուսիսափայլի», Միքայել Նալբանդյանի մասին: 1860—1864 թվականներին «Մեղուն» պարբերաբար անդրադարձել է Նալբանդյանի կյանքին ու գործունեությանը. ավելին. «Հյուսիսափայլի» հետապընդումների շրջանում Նալբանդյանը հանդես է եկել «Մեղվում», նրան է ուղարկել իր տպագրվելիք նյութերը: Այդտեղ են հրապարակվել **Կոմս Էմմանուելի հիշատակարանի** արտատպությունները «Հյուսիսափայլից», **Հրաշափառ խայտառակություն** պամֆլետը, **Նամակ «Մեղուի» խմբագրին** հոդվածը, **Երկու տող** աշխատության կարևորագույն հատվածները և **Ազատություն** բանաստեղծությունը: Ի դեպ, Նալբանդյանի **Ազատն աստված այն օրից** բանաստեղծությունն առաջին անգամ «Մեղուն» է հրապարակում իբրև առանձին ստեղծագործություն՝ **Ազատություն** վերնագրով: Նալբանդյանն աշխատակցել է «Մեղվին» և իր

արտասահմանյան երրորդ ուղևորության տարիներին (1860—62 թթ.). երկու անգամ այցելել է Պոլիս, հանդիպել «Մեղվի» խըմբագրին և նրա շուրջը համախմբված հայրենանվեր գործիչներին: Սըվաճյանը մեծ նշանակություն է տվել Նալբանդյանի այցելությանը, համարել այն հայ ժողովրդի երկու հատվածները կապող օղակ. «Ուրախ ենք դարձյալ մենք ալ,— գրում է նա,— զի պարոն Նալբանդյան մեր մեջը Ռուսիո լուսավորյալ ազգայնոց ներկայացուցիչն է և անշուշտ իր դարձին պիտի պատմի մեր հայրենակցացը, թե ինչպես հայերը հոն անքուն կմնան, մեր իղձերն ու ջանքերը անոնց հասկընցնելով, զանոնք ալ մեզի գործակից ընելու պիտի աշխատի, որպեսզի միևնույն հողի վրա եթե չկրնանք միանալ, գոնե միանանք սրտով ու տենչանքով...» («Մեղու», 1860, թիվ 117):

Սըվաճյանը բարձր է գնահատել «Հյուսիսափայլը»: «Մեղվի» 1862 թվականի օգոստոսի 30-ի համարում տպագրված **Հյուսիսափայլ օրագիրը** վերնագրով հոդվածում նա փորձել է արժեքավորել պարբերականի նշանակությունը հայ ժողովրդի կյանքում. ««Հյուսիսափայլը»... այն միակ լրագիրն եղավ,— գրում է Սըվաճյանը,— որ ռուսիաբնակ հայոց աչքը բացավ, անոնց իրավանցը պաշտպան կեցավ, հայհոյիչ և եկեխարդախ հայերու դեմ Հայաստանյաց եկեղեցին պաշտպանեց, ինքզինքը վտանգի մեջ դրավ, քանի՜-քանի՜ անգամ ազգին իրավունքները վտանգե ազատելու համար ազատախոսության ասպարեզը բացավ հայերուն առջև և անոր հետևեցան ազգին օգուտը լավ կշռող և միմիայն անոր աշխատող անձինք»: Սըվաճյանն այնուհետև բազմիցս ցավել է «Հյուսիսափայլի» դադարեցման առթիվ, իր ձայնը բարձրացրել այն «խավարասեր մարդկանց» դեմ, որոնք չկարողացան հանդուրժել «անկե բխած ժողովրդը կը լուսավորեր»: Նա ցավով է նըշում, որ «Հյուսիսափայլը» իր ազգօգուտ աշխատանքի համար ստացավ միայն «հալածանք, թշնամանք, անարգանք, նեղություն, վիշտ ու տառապանք»:

Մեծ հայրենակցի՝ Միքայել Նալբանդյանի մահից հետո էլ Սըվաճյանն անձնունվիրումով շարունակում է հայրենանվեր գործունեությունը՝ հիմք ունենալով իր գաղափարակցի ավանդները:

Հարություն Սըվաճյանի սոցիալ-տնտեսական հայացքները հիմնականում դըրսևորվել են **Լեհ գնդապետի մը ներ ազգին համար դատած արհեստը** հոդվածում:



Ժողովրդի զարգացման և առաջընթացի ասպարեզում հրապարակախոսը կարևոր գործոն է համարում նրա բարեկեցությունը: Մի պահ անտեսելով Հայաստանի քաղաքական իրավազուրկ վիճակը՝ լեհ գնդապետի անունից Սըվաճյանը նշում է ժողովրդի տնտեսական կյանքի զարգացման ցանկալի ուղիներ. «Ձեր ազգի երջանկության և հարստության միակ աղբյուրը... այս առատաբեր և կակուղ հողերն են» — ասում է օտարերկրացին և շարադրում իր տեսակետները Հայաստանում երկրագործության զարգացման վերաբերյալ: Հողը պետք է բարիք պարգևի, իսկ այն մշակելու համար անհրաժեշտ են կատարելագործված երկրագործներ և, իհարկե, խոշոր դրամագլուխ: Իսկ այդպիսի դրամագլուխ կարող են ապահովել «հայ մեծամեծները և հարուստները». «... մշակը թող սնակ չունենա,— ասում է գնդապետը,—հարուստները կդնեն դրամագլուխը»: Իսկ եթե հարուստները հրաժարվեն, Սըվաճյանը մի շարք եվրոպական երկրների օրինակով առաջարկում է հիմնել «աղքատներու ընկերություններ», որոնք կարող են կուտակել «անագին գումարներ» («Մեղու», 1856, թիվ 3):

Սըվաճյանին խորապես հուզում էր ժողովրդի նյութական ապահովության խնդիրը, նա հաճախ անդրադառնում էր ազգի տնտեսական զարգացման հարցին և պատահական չէ, որ առաջինը ինքը ողջունեց Մ. Նալբանդյանի **Երկրագործությունը որպես ուղիղ ճանապարհ** աշխատության հրատարակությունը: Սըվաճյանի «Մեղուն» առաջինն արձագանքեց Նալբանդյանի տնտեսագիտական հայացքներին՝ տպագրելով ընդարձակ հատվածներ **Երկու տող**-ից և շարադրելով **Երկրագործության** հիմնական գաղափարները: 1862 թվականին հրապարակախոսը «Մեղվում» հանդես եկավ մի հոդվածով, որի վերնագիրը վերցրել էր Նալբանդյանի աշխատությունից՝ **Ով որ հող չունի, վաղը հաց չունի:** Սըվաճյանի հոդվածը Նալբանդյանի տնտեսական զարգացման ծրագրի ճշգրիտ շարադրանքն էր, որտեղ նշվում էր հայության տնտեսական «թշվառությունից» դուրս գալու «հայուն ազգային բարեկեցության» հուսալի ուղին. «... միակ աղբյուրը ապրուստի և հարստության՝ ԵՐԿՐԱԳՈՐԾՈՒԹՅՈՒՆՆ է»: իսկ այդ նպատակին հասնելու համար անհրաժեշտ էր կազմակերպել «Երկրագործական ընկերությունն իր ամեն ճյուղերովը», որը պետք է միջոցներ կուտակեր և

կուզենք ապրել և մարդ ապրել... Թող կորչեն այսօրվա համար ապրող հայերը, որոնք և ոչ իսկ կարող են մինչև իրենց կենաց վախճանը տեսնելու» (նույն տեղը):

Որպես ժամանակի համակողմանի զարգացած ու առաջադեմ մարդկանցից մեկը, Սրվանձյանը դեմ էր ազգային ամեն մի սահմանափակության, ավանդույթների պատյանի մեջ ներփակվելուն, գտնում էր, որ ինչպես բոլոր ազգերի, հայերի համար ևս քաղաքակրթությունն անհրաժեշտություն է. «Ազգ մը, եթե կուզե անկե ետև ալ ապրիլ,— գրել է նա «Մեղվում»,— կամա ակամա անոր առջև խոնարհելու է, թեպետ լավագույն կըլլա իրեն համար կամավ անոր հնազանդիլը կամ զանի ինքը հրավիրելը... անկե ետև գոնե աշխատինք զանի ընդունելու»:

Մեծ է Սրվանձյանի դերը նաև արևմտահայ գեղարվեստական գրականության, թատերագիտության, գրական քննադատության բնագավառում: Նա գրել է բանաստեղծություններ, արձակ և դրամատիկական երկեր, թատերագիտական ու քննադատական հոդվածներ: «Մեղվի» էջերում տպագրված հայրենասիրական մի շարք բանաստեղծությունների հեղինակը Սրվանձյանն է: Նրա գրչին է պատկանում **Արիք, Հայկազունք** երգը, որ գրել է սահմանադրական շարժման ներշնչմամբ և որն ընդունվեց որպես ազգային հիմն:

XIX դարի 50—60-ական թվականներին արևմտահայ գրականության մեջ նոր էր կազմավորվում արձակի ժանրը: Հրապարակ էին գալիս առաջին ստեղծագործությունները, որոնք մեծ մասամբ գրվում էին թարգմանական գրականության ազդեցությամբ: Բնականաբար արևմտահայ գրական գործիչները (Ստ. Ոսկանյան, Գր. Չիլինկիրյան, Մ. Մամուրյան, Արմենակ Հայկունի, Հովհ. Հիսարյան և ուրիշներ) առաջին հերթին մտահոգված էին ազգային գրականության ստեղծմամբ: Ամենայն սրությամբ զգալի էր այնպիսի գրողի պահանջը, որն «իր հայրենակիցներուն կյանքովը կապրի», որի ստեղծագործության արդյունքը լինի «ո՛չ այս, ո՛չ այն ազգին գրականության ընդօրինակությունն կամ հետևությունը,— այլ լոկ ի՛ր հանճարին ծնունդը, ի՛ր ազգային էության մասը» («Արևելյան մամուլ», 1971, № 1, Մ. Մամուրյան, **Իվանոեի** թարգմանության առաջաբանը):

Սրվանձյանի «Մեղուն» մասնակցեց արևմտահայ վիպագրության կազմավորմանը: Նրա էջերում լույս տեսան **Պանդուխտ ի պանդոկ մահու մահճին մեջ** և **Անհիձա**, **սեր անպսակ** վիպակները, **Բարեպաշտ տղաք** խորագիրը կրող պատմվածաշարը, որոնք արձագանքում էին այդ տարիների հասարակական-բարոյական կարևոր խնդիրներին: Սրվանձյանի գրչին է պատկանում **Առանձար Ամատունի** պատմական ողբերգությունը, որի բեմադրությունը ջերմ ընդունելություն է գտել և համարվել է բացառիկ իրադարձություն արևմտահայ դրամատուրգիայի պատմության մեջ:

Գեղարվեստական գրականության ասպարեզում Սրվանձյանը մեծ դեր է խաղացել իբրև երգիծաբան: «Մեղվի» էջերում է սկզբնավորվում արևմտահայ երգիծաբանությունը, որի հետագա զարգացողն ու կատարելագործողը եղավ Հակոբ Պարոնյանը: Սրվանձյանը խորապես գիտակցում և բարձր էր գնահատում երգիծանքը, որպես հասարակության դաստիարակչական ու գաղափարական պայքարի զենք: Նրա կարծիքով երգիծանքի ներազդեցությունը շատ ավելի մեծ է, քան գիտական-փիլիսոփայական աշխատություններինը: «Էն ավելի լուսավորյալ և էն քաղաքակիրթ ազգերը,— գրում է նա,— հատկապես ժողովրդյան և տերության վարմանց պակասությունները ծաղրելու համար լրագիրներ ունեն, և այն ազգերը անանկ համոզված են և իրավամբ, թե՝ այն լրագիրներու մեկ թերթը բարոյականի դասատու փիլիսոփայի մը մեկ հատոր գրքեն ավելի ազդեցություն և արդյունք ունի» («Մեղու», 1857, թիվ 13):

Սրվանձյանն իր գաղափարական-քաղաքական պայքարում, ինչպես նաև կենցաղում «ազգին մեջ եղած պակասությունները, նախապաշարումները» քննադատելիս ընտրում է ծիծաղի խարազանող զենքը: Բացի հրապարակախոսական երգիծախառն հոդվածներից (հատկապես ուղղված Չամուռճյանի դեմ), Սրվանձյանը գրել է կատակերգություններ (**Ժողասին վաստակի միջոցները, Մտացածին ձուաձեղ մը, Լուսնի փողոցը** և այլն) և **Մենք կը գոցենք, Մեղուն կը բանա** վերնագրով հայտնի ոտանավորը, որտեղ մտրակվում են «Մեղվի» հակառակորդները:

Թատերական արվեստի զարգացման բնագավառում Սրվանձյանն առաջնորդվում է «Թատրոնը պետք է ճանչնալ որպես քաղաքակրթյալ ազգերուն մեկ դրոշմը» սկզբունքով: «Մեղվում» հրապարակելով Մ. Նալբանդյանի **Ազգային թատրոն Պոլսի մեջ** հոդվածը, Սրվանձյանն այնուհետև բազմաթիվ հոդվածներ է գրում պոլսահայ թատրոնի վիճակի ու զարգացման խնդիրների



վերաբերյալ: Նա մեծապես կարևորում է նյութի ընտրությունը, դերասանական կադրերի առկայությունը, նրանց մտավոր զարգացումն ու կատարողական վարպետությունը: «Մեզի համար թատրոնը զորավոր միջոց մըն է հոգիները բարձրացնելու,— գրում է Սրվանձյանը Խ. Գալֆայանի **Արշակ Բ** ողբերգությանը նվիրված անստորագիր հոդվածում,— սրտերը վառելու, գեղեցկին զգացումը զարգացնելու և առաքինության գաղափարը ժողովրդին ընտելացնելու համար»: «Արևելյան թատրոնի» հիմնադրման օրից (1861 թ.) Սրվանձյանն արձագանքում և լուսաբանում է նրա համարյա բոլոր բեմադրությունները: «Մեղուն» անդրադարձել է Մ. Պեշիկթաշլյանի **Վահան Մամիկոնյան** և **Անձնասպան իշխան** պատմական դրամաներին, Խ. Գալֆայանի **Արշակ Բ** ողբերգությանը և **Ալաֆրանկա** կատակերգությանը, Թ. Թերզյանի **Սանդուխտ կույս** դրամային, իտալացի Սիլվիո Բելիքոյի **Ֆրանչեսկո դա Ռիմինի** ողբերգությանը և բազմաթիվ այլ ներկայացումների: Սրվանձյանն իր հոդվածներով ո՛չ միայն զարգացնում էր ազգային թատրոնի դեմոկրատական առաջադեմ սկզբունքները, այլև արվեստի նկատմամբ ճաշակ սերմանում և նպաստում հասարակության գեղագիտական դաստիարակության գործին:

Հարություն Սրվանձյանի՝ XIX դարի հայ մշակույթի, լուսավորական և ազատագրական շարժման ամենանշանավոր գործիչներից մեկի, կյանքը և գործունեությունը առավել գնահատվեց և բազմակողմանի ուսումնասիրվեց սովետական կարգերի օրոք: Գրվեցին հոդվածներ, աշխատություններ, մենագրություն՝ սովետահայ գրականագետների և պատմաբանների կողմից (Աշ. Հովհաննիսյան. Աս. Ասատրյան, Ս. Բազյան, Գ. Ստեփանյան, Մ. Ներսիսյան և ուրիշներ): Առաջին անգամ հրատարակվեց նրա հրապարակախոսական երկերի ստվարածավալ ժողովածուն: Սրվանձյանի գրական հարուստ ժառանգությունն իր արժանի տեղը գրավեց հայ գրականության և հասարակական-քաղաքական մտքի պատմության ոլորտում:

Հարություն Սրվանձյանին՝ այդ անձնվեր մարտիկին, ժամանակին բարձր է գնահատել Միքայել Նալբանդյանը: Նշանավոր իր **Ուղերձ**-ում հեղափոխական դեմոկրատն իր գաղափարակից ընկերոջը ներկայացնում է որպես ժողովրդանվեր գործիչ, որ պատրաստ է իջել ազգի դարավոր խավարը ցրելու և նրա տառապանքներին զորավիգ լինելու.

«Տավրոսից Այրարատ, Բոսփորից
Ախթամար,
Քո տեսած, քո պատմած թշվառությունք
անհամար:
Ո՛վ սրբեց նեղվածի արտասուք աչերից,
Ո՛վ ողբաց, բողոքեց, երբ խլեցին հացն
որբից»:

---

չուկի արտադրության կազմակերպման գործում։

1938—1939 ուստարում Երևանում պոլիտեխնիկական ինստիտուտի քիմիական ֆակուլտետում ստեղծվում է 16 ուսանողներից կազմված մի խումբ, որոնք պետք է անցնեին պլաստմասսաների արտադրության տեխնոլոգիայի լրիվ դասընթացը։ Վարդանյանը մեկ տարով գործուղվում է Երևան՝ այս դասընթացներում դասավանդելու, աշխատելով որպես քիմիական ֆակուլտետի դեկան։ Հատկանշական է, որ այդ խմբից 10 ուսանողներ դիպլոմային աշխատանքը պաշտպանում են «Վինիլացետատ» թեմայով։ Մեծ եղավ Վարդանյանի անեցրած կադրերի հետագա ներդրումը Հայաստանի քիմիական արդյունաբերության զարգացման գործում։

Կուսկովոյի քիմիական գործարանում վինիլացետատի արտադրության կազմակերպումից հետո սկսվում է այդ երկու գործարանների սերտ բարեկամությունը։ Երևանի քիմիագործները՝ապարատավարները ու լաբորանտները, ինժեներները ու տեխնիկները իրենց պրոֆեսիոնալ հմտությունը բարձրացնելու նպատակով եղան Կուսկովոյի գործարանում։ Գործարանի ինժեներատեխնիկական աշխատողները օգնեցին Երևանում ացետալդեհիդի, բացախաթթվի, պոլիվինիլբութիրալի արտադրության կազմակերպմանը։

ՍՄԿԿ XXVI համագումարին ներկայացրած հաշվետու զեկուցման մեջ ընկեր Լ. Ի. Բրեժնևը, էկոնոմիկայի կառավարման մեթոդների կատարելագործման մասին խոսելիս, հանգամանորեն անդրադառնալով ղեկավարի, արտադրության հրամանատարի և իր ենթակաների փոխհարաբերության հարցերին, ասաց, որ ղեկավարներին մեծ իրավունքներ են տրվում նրա համար, որ նրանք լրիվ օգտագործեն դրանք։ Բայց ամեն մի ղեկավար պետք է մշտապես հիշի իր պատասխանատվությունը կուսակցության ու ժողովրդի հանդեպ, պատասխանատվությունն իր ղեկավարությանը վստահված մարդկանց հանդեպ։

Մարդիկ և պոլիմերները գիրքն ընթերցելիս մեր առջև հառնում է Մ. Ս. Վարդանյանի՝ արտադրության այդ հմուտ ղեկավարի ու դաստիարակի, անզուգական կերպարը։ Այդ գիրքն անշուշտ լայն ընդունելություն կգտնի ընթերցողների շրջանում։ Քանի որ հասարակական մեծ հետաքրքրություն է ներկայացնում, ցանկալի է այն հրատարակել նաև հայերեն։

**Ս. Հ. ՄԵԼՔՈՆՅԱՆ**



Адрес редакции: 375033, Ереван-33, ул. Барекамутян 59 г.

Խմբագրության հասցեն՝ 375033, Երևան—33, Բարեկամության 59 գ։ Հեռախոսներ՝ գլխավոր խմբագրի տեղակալ՝ 27—25—29, պատ. քարտուղար՝ 27—12—92, պրոպագանդայի և էկոնոմիկայի բաժիններ՝ 27—37—80, կուսակցական կյանք և կուլտուրայի բաժիններ՝ 27—19—80, գրական աշխատողներ՝ 27—60—64։

*Հանձնված է շարվածքի՝ 13.10.81—25.10.81։ Ստորագրված է տպագրության՝ 4.11.81։ ՎՖ 10385։ Ֆորմատ՝ 70×108 1/16։ Տպագրություն՝ բարձր։ 8,4 պայմանական տպ. մամ., 9,4 հրատ. մամ.։ Տպաքանակ՝ 15.832 Պատվեր՝ 2270։*

*Հկկ Կենտկոմի հրատարակչության տպարան, Երևան 23, Օրջոնիկիձեի պող. № 2։*
Типография издательства ЦК КП Армении.
Ереван-23, пр. Орджоникидзе, 2.

# ԻՆՉ ԿԱՐԴԱԼ

Վ. Ի. ԼԵՆԻՆ— Երկերի լիակատար ժողովածու։ Պետություն և հեղափոխություն։ *Հ. 33։ «Հայաստան» հրատ., 1981։*

Կ. ՄԱՐՔՍ, Ֆ. ԷՆԳԵԼՍ. Վ. Ի. ԼԵՆԻՆ— Պրոլետարիատի դիկտատուրայի մասին։ *«Հայաստան» հրատ., 1981*

*Ժողովածուում զետեղված են մարքսիզմի կլասիկների այն երկերը կամ երկերից հատվածներ, որոնցում շարադրված է նրանց ուսմունքը պրոլետարիատի դիկտատուրայի մասին։*

Խ. ՀԱԿՈԲՅԱՆ.— Կոմունիզմի կառուցումը և սովետական դեմոկրատիայի հետագա զարգացումը։ *«Հայաստան» հրատ., 1981։*

*Գրքում քննարկվում են սովետական դեմոկրատիայի զարգացման հրատապ հարցերը, դրա փուլերը, ուղիներն ու հեռանկարները։ Փաստական նյութի հիման վրա ցույց է տրվում պրոլետարական դեմոկրատիան համաժողովրդականի վերածելու պրոցեսը։ Հատուկ ուշադրություն է նվիրվում սոցիալիստական պետականության զարգացման գլխավոր ուղղությանը, սոցիալիստական դեմոկրատիայի համակողմանի ծավալմանն ու կատարելագործմանը։*

Հ. ԿԱՐԱՊԵՏՅԱՆ— Հայ դեմոկրատական-առաջադիմական մարքսիստական միտքը Ռուսաստանի և ռուս ժողովրդի մասին։ *(Ակնարկներ հայ հասարակական մտքի պատմությունից)։ «Հայաստան» հրատ., 1981։*

*Աշխատության չորս բաժիններում զետեղված ակնարկներում համառոտակի ամփոփված են հայ դեմոկրատական-լուսավորական մտքի (Խ. Աբովյան), հեղափոխական-դեմոկրատական մտքի (Մ. Նալբանդյան) և հայ մարքսիստ-լենինյանների հայացքները հիշյալ պրոբլեմի վերաբերյալ։*

**Национальная политика КПСС.** Очерк историографии. М., Политиздат, 1981.

*Հեղինակային կոլեկտիվը վերլուծել է մարքսիզմ-լենինիզմի դասականների աշխատությունները, ՍՄԿԿ հիմնական փաստաթղթերը, քննարկել կուսակցության ազգային քաղաքականության պատմագրության պրոբլեմները զարգացած սոցիալիստական հասարակության կառուցման և աստիճանաբար կոմունիզմին անցնելու շրջանում։*

*Գրքում քննադատված են ՍՄԿԿ ազգային քաղաքականության բուրժուական կեղծարարները։*

**Об охране окружающей среды.** Сборник документов партии и правительства. 1917—1980 гг. Изд. 2, доп. М., Политиздат, 1981

*Ժողովածուում զետեղված են կուսակցության և կառավարության հիմնական փաստաթղթերը ՍՍՀՄ-ում բնության գիտական օգտագործման ու պահպանման կազմակերպման վերաբերյալ։ Շրջակա միջավայրի պահպանության բնագավառում կոմունիստական կուսակցության և սովետական պետության սկզբունքային ու հետևողական քաղաքականության վկայությունն են դրանք։*

**Аграрная политика социалистических стран на современном этапе.** М., Политиздат, 1981.

*Գիրքն արգասիք է ԲԺՀ-ի, ՀԺՀ-ի, ԳԴՀ-ի, ՄԺՀ-ի, ՌՍՀ-ի, ՍՍՀՄ-ի, ՉՍՍՀ-ի գիտնականների և կուսակցական գործիչների համատեղ աշխատանքի։ Լուսաբանված է եղբայրական կուսակցությունների ագրարային քաղաքականության կենսագործման համակողմանի բեղմնավոր փորձը, նրանց համագործակցությունն ու փոխօգնությունը էկոնոմիկայի ագրարային սեկտորում արտադրաուժերի զարգացման և արտադրահարաբերությունների կատարելագործման մարզում։*

В. КУРОЕДОВ — **Религия и церковь в Советском государстве.** М., Политиздат, 1981.

*ՍՍՀՄ Մինիստրների խորհրդին առընթեր կրոնական գործերի խորհրդի նախագահ Վ. Ա. Կուրոեդովի գրքում քննարկվում են ՍՍՀՄ-ում կրոնական միավորումների իրավական վիճակի հետ կապված բազմաթիվ պրոբլեմներ։ Հեղինակը բացահայտում է կրոնական պաշտամունքի վերաբերյալ սովետական օրենսդրության էությունը, ցույց տալիս, թե ինչպես է գործնականում իրականացվում խղճի ազատության լենինյան սկզբունքը մեր երկրում։ Գիրքը յուրովի մի հակահարված է բուրժուակղերական կեղծարարներին։*

Գինը՝ 20 կ.
Индекс 77783
ISSN 0130—8114

# Գիտության և տեխնիկայի նորություններ

## ՋՐԻ ԱՆԱԿՆԿԱԼՆԵՐԸ

Բնական գազի միջինասիական գիտահետազոտական ինստիտուտի (Տաշքենդ) գիտնականներն ստեղծել են յուրօրինակ սարք, որում սովորական ջրմուղի ջուրը էլեկտրահոսանքի օգնությամբ ակտիվացվում է այնպես, որ մի դեպքում ջուրը դառնում է խտացրած ալկալի, մի այլ դեպքում՝ խտացրած թթու։ Ակտիվացված ջուրն սկզբում օգտագործվում էր հորատման լուծույթ պատրաստելու համար։ Արդյունքը շատ անակնկալ էր. ջուրը հաջողությամբ փոխարինում է այն հավելանյութերին, որ հարկ էր լինում ավելացնել լուծույթին, դրան համապատասխան հատկություն հաղորդելու համար։ Ջրի ալկալիությունն ու թթվությունը անփոխարինելի հատկություններ են ցեմենտի արտադրության մեջ, հանքի հարստացման, բույսերի բուժման, մթերքների պահպանման, կաթնաշոռի պատրաստման, ինչպես և գյուղատնտեսական վնասատուների դեմ պայքարելու համար։

Ակտիվացված ջուրն արագ բուժում է վերքերը, բերծվածքները, ինչպես և օգտագործվում է որպես լոսիոն, կոշտուկներ, արևայրուքներ բուժող միջոց և իջեցնում է օրգանիզմի թթվայնությունը։

Տաշքենդի համամիութենական վիրաբուժական ֆիլիալի մասնագետները փորձարկում են ակտիվացված ջուրը բժշկության մեջ կիրառելու նպատակով։

## ՍՏՈՐԳԵՏՆՅԱ ԱՐԱԳԸՆԹԱՑ

Տրանսպորտային շինարարության մինիստրության և ծանր ու տրանսպորտային մեքենաշինության մինիստրության մասնագետների ստեղծած համալիրը բաղկացած է երկու մեքենայից։ Թունելահորատանցման KT—1—5,6 կոմբայնը լրիվ մեքենայացնում է հանքապարների մշակումը, դրանց դուրս բերումը թունելից և վագոնիկների բարձումը։ Կոմբայնի արտադրողականությունը ժամում 90—100 խմ ապար է, մի քանի անգամ ավելի այժմյան լավագույն հորատող մեքենաներից։ Թունելի ամրաերեսարկման կոնստրուկցիան հնարավորություն է ընձեռում հրաժարվելու ծանր ու ոչ անվտանգ ձեռքի աշխատանքից, հինգ անգամ կրճատելու մոնտաժման ժամանակը, հասցնելով այն 8—10 րոպեի։ Դրա շնորհիվ օղակաշերտի երեսարկումը կատարվում է հանքաշերտի մշակման հետ միաժամանակ։

Հորատանցման նոր տեխնոլոգիան ներդրված է Լենինգրադի մետրոպոլիտենի և կոմունալ նպատակներով փորվող թունելների շինարարության ասպարեզում։

## ՍՆՆԴԱՄԹԵՐՔՆԵՐԻ ՆՈՐ ՓՈԽԱԴՐԱՆՂԱՆԱԿ

ԳԴՀ-ի «Գլաս-Կերամիկա» հանրահայտ կոմբինատի մասնագետներն (քաղաք Իլմենաու) ստեղծել են յուրօրինակ նախագիծ, ըստ որի ձեռնարկությունը սննդարդյունաբերության համար պատրաստում է «Ռագոտերմ» մակնիշի խողովակներ բորասիլիկատային ապակուց։ Մրգահյութը, գարեջուրը, խմորը, արգանակը, բուսայուղը, կաթը դրանց միջով պոմպի օգնությամբ քաշելու փորձ արդեն կա։ Խտացված օդի միջոցով հիգիենիկ ապակե խողովակներով փոխադրվում են նաև շաքարավազը, ալյուրը, հացահատիկը, ծխախոտ, չոր համեմունքներ։ Նախատեսված է նաև բանջարեղենի պահեստներից ապակե խողովակաշարով պահածոների գործարան փոխադրել կարտոֆիլ, գազար, բազուկ։ Առավելությունն այն է, որ բանջարեղենը խողովակներում հիանալի լվացվում է ջրով։ Թեթևակի փչացածները մրրկայնության շնորհիվ ենթարկվում են ինքնաոչնչացման։ Երկրորդ առավելությունը՝ այս ողջ աշխատանքը, անկախ կլիմայական պայմաններից, ղեկավարում է մեկ մարդ՝ կանգնած կառավարակետի մոտ։